# Շնորհավոր Նոր

ՍԻՐԵԼԻ՛ ՊԻՈՆԵՐՆԵՐ.

Անցավ նորություններով, հաճելի անակնկալներով ու աշխատանքային հաջողություններով լեցուն ևս մի տարի: Մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինի անունը կրող պիոներական կազմակերպության պատմությունը հարստացավ նոր էջերով, և յուրաքանչյուր պիոներ իր մասնակցությունն ունի այդ գործում: Հիշելու շատ բան կա:

Բայց կյանքը միշտ նորանոր պահանջներ է առաջադրում: Ձեզ սպասում են նոր ճանապարհներ, նոր գործեր: Այդ տեսակետից 1971 թ. ձեզ համար մեծ քննության տարի է լինելու: Մոտենում է պիոներիայի 50-ամյակը: «Միշտ պատրաստ» համամիութենական երթի պայմանների կատարումը յուրաքանչյուր դրուժինայի ու ջոկատի, յուրաքանչյուր պիոների սրբազան պարտքն է:

Ձեզ երջանիկ մանկություն է վիճակված: Թող միշտ բա՛րձր հնչեն ձեր երգն ու ծիծաղը: Բայց մի՛ մոռացեք, որ ձեր հիմնական գործը այսօր սովորելն է: Լա՛վ սովորեցեք, խորացրե՛ք ձեր գիտելիքները, եղեք հաստատակա՛մ: Գիտելիքներ և հաստատակամություն,— սա է ձեր իղձերի իրականացման միակ նախապայմանը, միայն այդպես դուք կդառնաք ձեր հայրենիքի համար պիտանի մարդիկ, կոմունիստական հասարակարգի ապագա ակտիվ կառուցողներ:

Շնորհավո՜ր ձեր Նոր տարին: Թող իրականանան ձեր բոլոր երազանքները:

*Լ. ՍԱՀԱԿՅԱՆ*
*ՀԼԿԵՄ ԿԿ առաջին քարտուղար*

## Շնորհավոր

Շնորհավո՜ր ձեր Նոր տարին,
Իմ պատանի՛ բարեկամներ,
Թող ձեր ճամփին փռվի բարին,
Տարին լինի արգասաբեր:
Թող դուք ուրախ, առողջ մնաք,
Լինեք անխոնջ, լինեք տոկուն,
Եվ ուսման մեջ առաջ գնաք
Մեր սիրելի հայրենիքում:

*ԳԵՂԱՄ ՍԱՐՅԱՆ*









Ամենալավը, որ մարդ մարդուն կարող է ցանկալ՝ արև և պատանություն, դուք ունեք:

Ունեք նաև գեղեցիկ ու թռչուն երազանքներ:

Ինձ մնում է ցանկալ ձեզ կորով և համառություն՝ ձեր շողուն անուրջներն իրականություն դարձնելու երկա՜ր և ոչ միշտ հարթ ճանապարհին:

*ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆ*



# տարի





«ՊԻՈՆԵՐ» ԱՄՍԱԳՐԻ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻՆ

*Մտնում ենք 1971 թվականը, որով սկիզբ է առնում ստեղծագործական ու կառուցողական մղումների մի նոր տասնամյակ՝ մեր դարի ութերորդ տասնամյակը:*

*1970 թվականի՝ հին տարվա արդյունքների ամփոփումը համընկավ մեր հերոսական հանրապետության, Սովետական Հայաստանի հիսունամյա արդյունքների ամփոփմանը: Այդ տարին նշանավոր էր նաև նրանով, որ նախանշվեցին գալիք հնգամյակում մեր հայրենիքի կատարելիք նոր թռիչքի ուրվագծերը: Հին տարում դուք կարդացիք այդ հեքիաթային, հրաշագործ թռիչքի մասին:*

*Իսկ 1971 թվականն այդ մեծ գործերի իրականացման առաջին տարին է: Մեր երկիրը ստարտ է վերցնում այդ մեծ թռիչքի համար:*

*Ձեզ էլ սպասում են պիոներական ու աշակերտական շատ գործեր: Դուք պետք է աշխատեք դրանք կատարել անբասիր, պարտաճանաչ կերպով:*

*Դուք ապրում եք գիտա-տեխնիկական մեծ վերափոխումների դարում: Սովետական մարդիկ հրաշքներ են գործում: Գիտությունը հսկայի քայլերով է առաջ գնում մեր երկրում: Մի՛ եղեք այդ բոլորի սոսկ ականատեսը: Միշտ հիշեցե՛ք, որ դուք մեծ անելիքներ ունեք: Հիշեցե՛ք, որ ներկա սերունդը մեր կյանքի վարգացման էստաֆետը ձեզ է փոխանցելու: Սովորեցե՛ք, հարստացրե՛ք ձեր միտքը նոր գիտելիքներով, դարձե՛ք մեր հասարակության արժանի քաղաքացիները: 1971 թվականը ձեզ համար թող լինի մեծագործությունների տարի:*

*Շնորհավո՛ր ձեր Նոր տարին:*

ՇԱՎԱՐՇ ՍԻՄՈՆՅԱՆ
*ՀՍՍՀ լուսավորության մինիստր*





## ՄԻ ՊԱՏԱՆԻ ՆՈՐԵԼՈՒԿ

*ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ*

Շտապում էր անցնող տարին,
Վեր էր կացել իր տեղից.
Պիտի գնար մեկ-մեկ անցած
Իր օրերի հետևից:
Քամու կառքը թողած դրսում,
Ուրախ ժպիտ երեսին,
Դահլիճ մտավ, որ հանդեսում
Մնաս բարով մեզ ասի:
— Դե՛, շտապե՛ք,— կանչեց նա մեզ,—
Երգե՛ք զվարթ, խնդացե՛ք,
Ու ձեր ուրախ պարով հիմա
Ողջ աշխարհը թնդացրե՛ք:
Հոգնություններն ամեն ձևի
Ծափ-ծիծաղով են անցնում.
Արևն այդպես քնած հողին
Ծիծաղով է արթնացնում:—
Ասաց, երգեց, պարեց, խնդաց,
Հալեց, վանեց ձյուն ու բուք,
Եվ հին տարին դարձավ հանկարծ
Մի պատանի Նորելուկ:

*Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ*





# ԼԵՆԻՆ

*ԹԱԹՈՒԼ ԲՈՒՐՈՐՋՅԱՆ*

Քո ժպիտով ահա
Մանուկներն են ժպտում,
Ծաղիկներն են փթթում,
Որ քնած են հիմա։

Քո լույսերն են արթուն
Մեր աչքերում վառվում,
Քո քայլով ենք լուսնի
Պողոտաներն առնում։

Արևի պես անքուն
Դու հավերժ ես, դու կաս,
Ուր էլ գնանք կյանքում
Մեզ հետ անվերջ կգաս։

## ԱՅՍՏԵՂ ՆՆՋՈՒՄ Է...

*ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆ*

Այստեղ ննջում է մեր մեծ Իլյիչը,
Ննջում է խաղաղ և նա կարծես
Լսում է մանկանց աղմուկն ու ճիչը,
Տեսնում բոլորիս արևի պես։
Լուին ննջում է նրա ծով սիրտը,
Բուրող գարունն է քնել սրտում,
Բորբ արևից է առել ժպիտը,
Որ ջերմություն տա ձմռան ցրտում։
Նրան նայողը մի պահ հիշում է,
Տեսնում է մտքի աչքով լուին
Տասնյոթ թվի այն ցուրտ աշունը,
Որ արև տարավ աշխարհներին։
Այստեղ վայրկյանը հանդիսավոր է,
Այստեղ անձայր են շարքերը խիտ,
Անդորրն էլ այնքան հուզող ու խոր է,
Որ դու լսում ես զարկը սրտիդ։





*ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ*

# ԿԱԿԱՉԸ ՁՅԱՆ ՎՐԱ

Դահուկավոր մի աղջիկ
Իր վզկապն է ծածանում.
Նա մերթ կանգնում է լանջին,
Մերթ ներքև է սլանում:

Ճերմակ ձյունի վրայով,
Վազող կակաչ է կարծես,
Սլանում է լանջերով
Իրիկնային քամու պես:

Թեթև հետքեր են թողել
Դահուկները ճամփեքին,
Կարծես գծել են տողեր
Դաշտի ձյունե տախտակին:

Իսկ թե ինչեր է գրել
Վրան՝ ծված տողերի,
Գիշերը վարժ կկարդան
Նապաստակներն անտառի:

*Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ*

# ՓՈՔՐԻԿ ԱՆԱՍՆԱՊԱՀԸ

*ՋՈՐԱՅՐ ԽԱԼԱՓՅԱՆ*

Ղարաբաղի Թալիշ գյուղի ակումբում երեխաների համար մեքսիկական «Խոսե Խուանիտո» կինոնկարն էին ցուցադրում: Կինոնկարը պատմում էր, ինչպես մեքսիկացի փոքրիկ անասնապահ Խոսե Խուանիտոն միայնակ մի մեծ նախիր էր հսկում և թե ինչպես նա ամեն մի մեքսիկացու նման լայնեզր գլխարկ էր կրում, սիրում էր երգել մեքսիկական երգեր, նվագել կիթառ, ձիավարել, լասսո նետել, ատրճանակ արձակել գողերի ետևից և ինչպես միաժամանակ Խոսե Խուանիտոն երազում էր ցլամարտիկ դառնալ:

Մի քանի օր իրար ետևից ցուցադրում էին այդ կինոնկարը, և Թալիշի երեխաները կրկին ու կրկին անգամ գնում էին դիտելու մեքսիկացի փոքրիկ անասնապահ Խոսե Խուանիտոյի արկածները: Կինովարձույթի շրջանային գրասենյակից կանգահարում էին, թե՝ ուղարկեք «Խոսե Խուանիտո» կինոնկարը, բավական է: Թալիշից պատասխանում էին, թե՝ ո՞նց ուղարկենք, երեխաները պահանջում են կրկին ցուցադրել: Երբ վերջապես, այնուամենայնիվ, կինոնկարը տարան, մի քանի օր անց շրջկենտրոնից կանգահարեցին, թե՝ այո՛, կինոնկարը ստացել ենք, բայց հերոսը՝ մեքսիկացի փոքրիկ անասնապահ Խոսե Խուանիտոն չկա:

— Ո՞նց թե՝ չկա,— զարմացավ կինոմեխանիկ Ալիքսանը:

— Չկա, էլի, կինոնկարը առանց Խուանիտոյի է: Անհարմար բան է, ընկերնե՛ր, վերադարձրե՛ք կինոն-

# ԾՈՎԸ

*ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ*

Ծփում է ծովն իր համար՝
Կապույտ շոր հագին:
Կապույտ շորի արանքից
Ելնում է արփին:

Կապույտ շորի ծալքերում
Սիրում են ապրել
Լիալուսինը կարմիր
Ու ոսկի ձկներ:

կարի հերոսին: Մեքսիկական նախիրը մնացել է անտեր, կադրը կադրի ետևից ցուցադրում է, թե ինչպես գողերը անարգել հափշտակում են Խոսե Խուանիտոյի անասունները, ինչպես հենց հանդիսատեսի աչքի առաջ նրանք մորթում են անմեղ հորթերին ու խորոված, խաշլամա, լոլաքաբաբ և այլ ուտելիքներ պատրաստում և ուտում: Հավատացնում ենք ձեզ, որ ամբողջ կինոնկարում Խոսե Խուանիտոն մի անգամ գոնե չի երևում, մեկը չկա, որ սլանա ձիով, արձակի մեքսիկական ատրճանակը, նետի լասսոն: Կինոնկարում այլևս ոչ ոք չի երգում, ոչ ոք չի երազում ցլամարտիկ դառնալ: Բա ձեր խիղճը ո՞նց թույլ տվեց շրջանի մնացած երեխաներին զրկել Խոսե Խուանիտոյին տեսնելու հաճույքից... Կինոմեխանիկ Ալիքսան, կա՛մ վերադարձրեք Խոսե Խուանիտոյին, կա՛մ գլխով եք պատասխանատու:

Ալիքսանը չգիտեր ինչ աներ: Ում հարցնում էր, թե չէ՞ն տեսել արդյոք մեքսիկական կինոնկարի հերոս Խոսե Խուանիտոյին, բոլորը ծիծաղում էին:

Մի քանի օրից հետո շրջանային կինովարձույթի գրասենյակից կրկին զանգահարեցին.

— Ալո՛, թալիշեցինե՛ր, մենք գիտենք, որ ձեր գյուղը նախրապան չունի, որովհետև ձեզանից ոչ մեկը լայեղ չի անում նախրապան լինել, և դուք մեքսիկացի փոքրիկ նախրապան Խոսե Խուանիտոյին գողացել եք, որ ձեր անասունները հսկի:

Անհարմար բան էր ստացվել, բայց որտեղի՞ց վերադարձնեն Խոսե Խուանիտոյին: Խոսե Խուանիտոն չկար...

Թալիշի նախիրը, իրոք, ոչ ոք չէր հսկում, ոչ ոք չէր ցանկանում նախրապան լինել, նախրապան բառն անգամ վիրավորական էին համարում և այդ վիրավորական բառի պատճառով անտեր մնացած անասունները կոլտնտեսության ցանքերին և մասնավոր մարդկանց մարգերին մեծ վնասներ էին հասցնում: Եվ քանի որ գյուղխորհրդի նախագահ Պետրին խիստ մարդ էր, ապա օր չէր լինում, որ տասնյակ անասուններ չքանտարկվեին ու աղմուկ-աղաղակ չլիներ գյուղում:

Անցավ մի քանի օր ևս ու մեկ էլ մարդիկ նկատեցին, որ նախիրը կանոնավոր գնում է արոտ, վերադառնում: Եվս մի քանի օր անց, կինոմեխանիկ Ալիքսանը Երի հանդում նկատեց մի փոքրիկ տղայի, որը լայնեզր գլխարկ էր կրում՝ մեքսիկականին շատ նման, տաբատն էլ շատ նման, կիթառն էլ, լասսոն էլ, մի խոսքով, ամեն ինչը մեքսիկականին շա՜տ նման: Անգամ երգը: Իսկ այդ փոքրիկ տղան երգում էր.

**Խոսե՛, Խոսե Խուանիտո՜,**
**Սանտյագո, մանտյագո Խուանիտո՜,**
**Օ՜, Սապո՛ւնց Սեդա,**
**Օ՜, քելե՛ Սաթո...**

«Ի՞նչ խոսք, որ իսկական մեքսիկական երգ է երգում փոքրիկը»,— մտածեց կինոմեխանիկ Ալիքսանը:

Մի քանի օր անց, մեկ ուրիշը նույն տղային տեսավ կոլտնտեսության հովիվ Ուդունց Սարգսի ձիու վրա՝ նախրից փախած երնջի ետևից սլանալիս: Փոքրիկ տղան գլխավերևում պտտում էր լասոն: Իսկ երբ նա երինջը կրկին վերադարձրեց նախիր, երգեց անհասկանալի լեզվով.

**Խոսե՛, Խոսե Խուանիտո՜,**
**Սանտյագո, մանտյագո Խուանիտո՜,**
**Օ՜, Սապո՛ւնց Սեդա,**
**Օ՜, քելե՛ Սաթո...**

«Ի՞նչ խոսք, որ մեքսիկական երգ է երգում փոքրիկը»,— մտածեց այդ մարդը:

Ուդունց Սարգիսը հաստատեց, որ դա իրոք Խոսե Խուանիտոն է, որ ինքն է իր ձին տվել նրան և որ Խուանիտոն չի ցանկանում վերադառնալ կինոնկար, նրան ձանձրացրել է սեանսից-սեանս նույնը կրկնել արդեն քանի՜ հազարերորդ անգամ:

— Հա՛, երեխան որոշել է մնալ մեր գյուղում,— ասաց Սարգիսը:— Մեր գյուղին նախրապան պե՞տք է, թե՞ պետք չի: Դեռ միտք ունեմ ամռանը տանեմ սար, կոլտնտեսության հոտը հսկի, սովորի: Ես էլ որ թոշակի



անցա, ձեր անասունը ո՞վ պիտի պահի:

Երբ շրջկենտրոնից զանգահարեցին, թե՝ ճի՞շտ է, որ Խոսե Խուանիտոն գտնվել է, կարո՞ղ ենք կինոնկարը բերել ու նրան կրկին մտցնել կինոնկարի մեջ, Թալիշից պատասխանեցին, թե՝ այո՛, չար լեզուները խաբել են ձեզ. մեր երեխաներն են Խոսե Խուանիտո խաղում, ի՛նչ Խուանիտո, ի՞նչ բան:

Կինովարձույթի գրասենյակում ստիպված կինոնըկարը վերանվանեցին «Անպահապան նախիրը» և ուղարկեցին ցուցադրելու: Բայց այլևս այդ կինոնկարը հաջողություն չուներ, ոչ ոք չէր գնում դիտելու: Հիրավի, ի՞նչ կար դիտելու, շատերը անպահապան նախիր տեսնում էին հենց իրենց գյուղերում:

Այդպես Խոսե Խուանիտոն մնաց Թալիշում և կոլտնտեսության հովիվ Ուդունց Սարգիսը ամառը նրան իր հետ տարավ Մռով սարի ամառային արոտավայրերը: Բայց քանի որ Ղարաբաղի սարերին մեքսիկական լայնեզրն ու տաբատն այնքան էլ չէին ներդաշնակում, Խոսե Խուանիտոն կովկասյան յափնջի առավ ուսերին: Կիթառն էլ չէր ներդաշնակում, և նա հովիվներից սրինգ նվագել սովորեց:

Մռով սարի ամառային արոտավայրերում Խոսե Խուանիտոն ծանոթացավ իր հասակի շատ ադրբեջանցի երեխաների: Դրանք հարևան հայկական գյուղերի հովիվների որդիներն էին՝ աշխատասեր, քաջ, իրենց աշխատանքը սիրող, հպարտ հովիվներ: Նրանց բոլորի անունները ադրբեջանական բարեհնչյուն անուններ էին՝ Ալի, Մուրադ, Հասան, Թոֆիկ: Իսկ Թալիշում նրա հասակի յուրաքանչյուր հինգից միայն մեկի անունն էր հայկական. մնացած չորսինը ոչ հայկական էր, ոչ ռուսական, ոչ վրացական կամ ադրբեջանական, այլ ծիծաղելի, աղավաղված անուններ՝ Սերոժ, Վալոդ, Շաշա, Աբո:

Խուանիտոն չհավանեց այդ անունները և իր համար ընտրեց Վարդան անունը, որովհետև, ճիշտն ասած, Ղարաբաղի սարերին Խոսե Խուանիտոն էլ չէր ներդաշնակում:

Այդ ամռանը Խուանիտո Վարդանը շրջեց բոլոր արոտավայրերը և ամենուր նա հանդիպում էր նախնի անասնապահների թողած հետքերին: Հյուղակների ու շինությունների ավերակները ցույց էին տալիս, որ եկի ու գութանի դարում ղարաբաղցիները ավելի հեռու էին գնում իրենց բնակավայրերից և ավելի համառորեն ու հետևողականորեն էին նվաճում բնությունը, քան մեքենայի ու տրակտորի մեր դարում: Նրանք անտառափայտը բերում էին հեռավոր ծմակներից ու գյուղի մերձակա անտառուտները չէին ոչնչացնում: Նրանք քարքարոտ, ոչ սևահողային սարալանջերը չէին հերկում և դրանից հողը չէր չորանում ու աղբյուրները ցամաքում: Նրանք նաև ամռանը որս չէին անում և անտառներում վխտում էին բազմաթիվ վայրի կենդանիներ:

Այդ ամենի մասին նրան պատմում էր Ուդունց Սարգիսը:

Ամառնամուտին հոտն ու հովիվները Մռով սարի փեշերից իջան դաշտ և գյուղում Խուանիտո Վարդանն իմացավ, որ հարևան գյուղերում նույնպես մկրտել են հայտնվել փոքրիկ անասնապահ Խոսե Խուանիտոներ: Ամենազարմանալին այն էր, կինոնկարի հերոսը կրկին վերադարձել էր կինոնկար: Իսկ Խոսե Խուանիտո Վարդանին իր նոր շորերով տեսնելով, կինոմեխանիկ Ալիքսանը ուրախացած բացականչեց.

— Ես ասում էի, չէ՞, որ մեր գյուղի երեխաներն



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

են մեքսիկական շորեր կարել ու Խուանիտո են խաղում: Իսկ ինձ քիչ էր մնում պատասխանատվության կանչեին...

Այժմ շրջակա բոլոր գյուղերում Մռով սարից իջած հովիվները Խուանիտո Վարդանի կամ պարզապես ղարաբաղցի քաջ անասնապահ փոքրիկ Վարդանի արկածների մասին են պատմում, թե ինչպես է նա անձրևի ու կարկտի տարափի տակ սլանում ձիու վրա, ոչխարներին հավաքում քարափի տակ, ինչպես գիշերը հրացան է արձակում գայլերի ետևից, թե ի՞նչ հիանալի անասնապահ է նա, ինչքա՞ն լավ է սազում նրան կովկասյան յափնջին, ի՞նչ հավատարիմ ընկեր է և ինչպես է ղարաբաղցի քաջ անասնապահ Վարդան Մարտիրոսյանը երազում, որ Ուդունց Սարգիսը հովիվների վերջին Մոհիկանը չլինի, որ բոլոր անպահապան նախիրները նախրապաններ ունենան և Ղարաբաղի սարերում վնգան հովիվների, կթվորուհիների, նրանց երեխաների ուրախ կանչերն ու հայկական սրինգի հավիտենական նվագը:



Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

# ՋՈՆ ԱՐՔԱՆ ՈՒ ՁՄԵՌ ՊԱՊԸ

Ա. ՄԻԼՆ

Վատ համբավ էր հանել արքան,
Սուտ էր խոսում նա շատ անգամ.
Այնքան նենգ էր թղթախաղում,
Որ նրա հետ չէին խաղում:
Չուներ ընկեր ու մտերիմ,
Ոչ ոք նրան չէր հավատում:
Նա մենակ էր նստում թեյի
Ու մուրաբան մենակ ուտում:

Բայց Նոր տարվա նախօրյակին,
Սրի տես, որ կարոտագին
Նամակներ են գալիս անթիվ
Ջոն արքային մեծապատիվ:
Դու մի՛ ասի, չզարմանա՛ք,
Ծանոթների կողմից իրեն՝
Արքան ի՛նքն է գրում նամակ:

Ու մի օր էլ խելքին փչեց՝
Նամակ գրել Ձմեռ պապին:
«Այս Նոր տարվա նախօրյակին
Ես կուզեի կարկանդակներ,
Անուշ մրգեր, քաղցրավենի,
Տեսակ-տեսակ շոկոլադներ:
Սիրում եմ ես զվարճանալ,
Քեֆից հետո մի քիչ խաղալ:
Բարի եղիր, ո՛վ Ձմեռ պապ,
Այցելության գալ ինձ շտապ,
Նաև դնել իմ բարձի տակ
Մի ֆուտբոլի սիրուն գնդակ»:

Գիշերն արքան քնեց շատ ուշ
Ու վեր կացավ առավոտ վաղ.
Նա շուռ տվեց բարձը զգույշ,
Տեսավ ոչինչ չկա, ավա՛ղ:
Իսկ այդ պահին իր հպատակ
Բոլոր մարդկանց հարկերի տակ
Փողոցներում ու բակերում
Գնդակներն են հա գլորվում:
Քաղցրեղենից մանուկների
Շրթունքներն են իրար կպչում:

Իսկ Ջոն արքան մտամոլոր
Շրջում է լուռ ու հառաչում:
Մոտենում է պատուհանին
Արքան մռայլ ու զայրացած.
Սսես ինչ-որ ծանր բեռից՝
Նա տնքալով նայում է ցած:
Իսկ ներքևում ձյունն է շողում,
Մանուկներն են գնդակ խաղում:
Սիրտն է լցվում արքա Ջոնի,
Որ չամաչի՝ լաց կլինի...
Բայց, ա՛յ քեզ բան, հենց այդ պահին,
Թը՛մփ, դիպչելով նրա գլխին,
Պատուհանից ընկավ սենյակ
Ու ցատկոտե՛ց, ու պար եկա՛վ
Մի գեղեցիկ, կարմիր գնդակ:

Որքա՛ն լավն են, որքա՛ն բարի
Մանուկները այս աշխարհի:
Թող մայրերը նրանց սիրեն,
Կոնֆետներ տան, կինո տանեն:
Նրանք հենց որ նկատեցին
Տխուր է շատ ծերուկ արքան,
Պատուհանից ներս նետեցին
Իրենց նվերը տոնական:

Փոխադր. Ս. ՄԿՐՏՉՅԱՆԻ

# ԲԱՆԱՎԱՆՈՒՄ

ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

— Սե՛թ,— ասաց Մարտինը,— երբ դու գնում էիր թունելախորշերի կողմը, այդ Նանան նայում էր քո ետևից:

— Ի՞նչ է ուզում նա քեզանից, Սե՛թ,— ասաց Արմենը:

— Չգիտեմ,— ասաց Սեթը,— երեկ ես գնում էի ճաշարանի կողմ, իսկ նա գալիս էր իմ ետևից: Ես կռացա, որ քար վերցնեմ, նա հասկացավ ու հեռացավ:

Շինարարների բանավանը՝ մի քանի շենքեր, բաղնիքը, ակումբը, ճաշարանը, դպրոցը, տեղադրված էր սարալանջի գոգավորությունում: Վարում՝ գետն էր, ամբարտակի կառույցը, թունելախորշերը:

— Սե՛թ,— ասաց Վահագնը,— եթե նա շատ ձանձրացնի, մենք կարող ենք միջամտել:

— Ինքս գլուխ կհանեմ,— ասաց Սեթը:

— Պարծենում ես,— ասաց Վահագնը,— աղջիկներին չգիտես:

Կինոյում Նանան ընկերուհիների հետ էր:

— Սե՛թ,— ասաց Վահագնը,— նա շարունակ նայում է քեզ:

Սեթը դարձավ, մատով սաստեց այդ աղջկան: Դրանից հետո էլ Նանան շարունակում էր նայել նրա կողմը: «Ի՞նչ է ուզում նա ինձանից»,— մտածում էր Սեթը: Տղաներով դուրս եկան, կանգնեցին հանրակացարանի անկյունի մոտ: Վահագնի ընդունիչից հնչում էր աքանչելի ռիթմ, գիշերը զով էր, և նրանք երկար կանգնած մնացին: Եվ տղաները մի-մի «Անի» ծխեցին:

— Սե՛թ,— ասաց Մարտինը,— առավոտյան գնանք Ջերմուկ:

— Գնանք,— ասաց Սեթը:

Վահագնը ցանկացավ նրանց հետ գնալ: Առավոտյան նրանք պայուսակները թողեցին Մարտինենց տանը և պատահական ավտոմեքենայի թափքը ելած՝ մեկնեցին Ջերմուկ: Թափառեցին առողջարանների շրջակայքում, խմեցին ծիրանի հյութ, նստեցին սրճարանում: Վահագնը վերցրել էր ընդունիչը, օրը հիանալի անցավ:

— Դու որտե՞ղ ես եղել,— ասաց հայրը, երբ Սեթը տուն մտավ:

— Դպրոցում,— ասաց Սեթը՝ պայուսակը բազմոցին գցելով:

— Նա դպրոց չի եկել,— ասաց Նանան:— Նրանք տղաներով ինչ-որ տեղ էին գնացել:

— Դու ինչո՞ւ ես եկել այստեղ,— ասաց Սեթը:

— Դա քո գործը չէ,— ասաց հայրը:

Երբ Նանան գնում էր, հայրը ասաց.

— Ուղեկցի՛ր նրան:

— Դու երեկ հանրակացարանի մոտ սիգարետ էիր ծխում,— ասաց Նանան:

— Իսկ դա քո գո՞րծն է,— հարցրեց Սեթը:

— Դու քեզ շատ մեծ ես երևակայում:

— Դու ինձանից ի՞նչ ես ուզում,— ասաց Սեթը:

— Դու ծխում էիր, ես տեսա:

— Ես քեզ կծեծեմ,— ասաց Սեթը:

— Ծեծի՛ր,— ասաց Նանան:— Ես հորդ չեմ ասի:

— Ա՜խ, եթե դու տղա լինեի՛ր...— ասաց Սեթը:

— Դու վատ տղա չես,— ասաց Նանան,— Վահագնը՝ նույնպես, մեր բոլոր տղաները էլ լավն են: Հայրդ ասում է՝ «Նրանք պարզապես չգիտեն ինչ անեն և անում են՝ ինչ խելքներին փչում է»:

— Շատ մի՛ խոսի, գլուխս ցավում է,— ասաց Սեթը:

Նրանք կանգնել էին շքամուտքում:

— Բարի գիշեր ասա ինձ, ուրիշը ինձ կուղեկցեր մինչև տուն:

— Բարի գիշե՛ր,— ասաց Սեթը:— Գնա՛:

— Դու նրան ուղեկցեցի՞ր մինչև տուն,— հարցրեց հայրը:

— Ո՛չ:

— Նա լավ աղջիկ է,— ասաց հայրը:

Դասերից հետո անձրև եկավ: Բանավանի ճանապարհները ցեխոտվեցին: Օդը պաղ էր: Սեթը տուն էր գալիս անձրևանոցը գլխին քաշած: Արմենից բաժանվեց և ճանապարհը շարունակեց մենակ: Անձրևը սաստկանում էր, և Սեթը զգաց, որ մեկը վազում է իր ետևից, ետ նայեց և արագացրեց քայլերը:

Նանան առանց անձրևանոցի էր, թրջված, նրա թաց վարսերը կպել էին ճակատին:

— Ի՞նչ կա,— հարցրեց Սեթը:

— Սե՛թ, հայրդ քեզ ծեծե՞ց:

— Ո՛չ,— ասաց Սեթը:

Անձրևը ավելի սաստկացավ, և նրանք վազեցին մոտակա մուտքը:

— Հետո՞,— ասաց Սեթը՝ անձրևանոցը գլխից վար բերելով:

— Ուրիշ ոչինչ,— ասաց Նանան:

— Եվ դրա համար դու վազում էիր իմ ետևի՞ց:

— Ո՛չ,— ասաց Նանան,— անձրև էր, և ես վազում էի:

— Դե գնա՛,— ասաց Սեթը,— և նորի՛ց վազիր:

Նանան նայեց դուրս:

— Գնա՛, գնա՛,— ասաց Սեթը:

Նանան սեղմեց պայուսակը ու ցեխաջրերի միջով վազեց անձրևի տակ:

Երեկոյան անձրևը կտրվեց, արև ելավ, բանավանը կապտավուն երկնքի տակ, թարմ օդում կանգնեց լուսավորված, թարմացած: Բանվորները՝ կանայք ու տղամարդիկ, լավ հագնված, դուրս եկան զբոսնելու, շատերը գնացին ակումբ: Այստեղ, մինչև կինոյի սկսվելը, նվագում էր շինարարների նվագախումբը:

— Բարև՛, Սե՛թ,— ասաց Նանան մոտենալով:

— Բարև՛,— ասաց Սեթը:

— Ինչպե՞ս ես, Սե՛թ,— հարցրեց Նանան:

— Վատ չեմ:

— Չգնա՞նք սուրճ խմենք:

— Գնանք,— ասաց Սեթը:

Նստեցին առանձին սեղանի մոտ: Ճեմասրահում շատ մարդ կար: Նվագախումբը նվագում էր «Չա-չա»:

— Այստեղ լավ է,— ասաց Նանան:

— Վատ չէ,— ասաց Սեթը:

Նվագախումբը նվագեց «շեյկ»: Բոլորը պարում էին «շեյկ»:

— Պարե՛նք,— ասաց Նանան:

— Պարե՛նք:

Սկսեցին հենց սեղանի մոտից: Նանան խնդում էր, Նանան ճերմակ ատամները բացած խնդում էր, նա նման էր հարբածի, նրա կանաչ աչքերը անթարթ ժպտում էին, նա երկար ոտքերի վրա եռանդով ճկվում էր և թևերը տարածում էր դեպի Սեթի դեմքը: Հետո նրանք նստեցին սեղանի մոտ:

— Լավ ես պարում, Սե՛թ,— ասաց Նանան:— Բարձրահասակ տղաները լավ են պարում:

— Լավ ես նկատել:

— Երեկ տղաների հետ կանգնած էիր շինարարների փողոցում:

— Լրտեսում ես,— ասաց Սեթը:

— Դու ծխում ես,— ասաց Նանան:— Հայրդ չգիտե:

— Հետո՞ ինչ:

— Ես սիրում եմ, երբ տղամարդիկ ծխում են,— ասաց Նանան:— Բայց դու դեռ այդքան չես մեծացել:

— Ցանկանում եմ քեզ դուր գալ,— ասաց Սեթը:

— Հակառակն եմ կարծում,— ասաց Նանան,— բայց դու չպիտի ծխես:

— Պահանջո՞ւմ ես:

— Այո՛:

— Է՛լ ինչ ես պահանջում: Լսի՛ր,— ասաց Սեթը,— ես չգիտեմ, թե դու ինձանից ինչ ես ուզում:

Նանան հարցական նայեց նրան, Նանան նայեց ինչ-որ երկյուղով:

— Ես չգիտեմ, թե դու ինչու ես իմ ետևից քարշ գալիս,— ասաց Սեթը:— Դու ինձ ձանձրացնում ես:

Նանան վար դրեց սուրճի կիսատ բաժակը, ելավ: Սեթը սեղանի մոտ մնաց մենակ:



— Սե՛թ,— ասաց Մարտինը հետևյալ օրը, տղաների սովորական հավաքում,— երեկ Նանան ակումբում ցուցադրում էր սքանչելի «շեյկ»:

— Սե՛թ,— ասաց Արմենը,— ի՞նչ է ուզում այդ աղջիկը քեզանից: Մի՞թե դու չես կարողանում նրան այնպես վախեցնել, որ նա քեզ տեսնելիս մայթը փոխի:

— Կուզե՞ս, Սե՛թ, այդ թող ի՛նձ,— ասաց Վահագնը:

— Մի՞թե նա լավ աղջիկ է,— ասաց Արմենը:

— Նրա ոտքերը շատ երկար են,— ասաց Մարտինը:

— Այդ աղջիկը հպարտություն չունի,— ասաց Վահագնը:

— Մի՞թե նա լավ աղջիկ է,— կրկնեց Արմենը:

— Չգիտեմ,— ասաց Սեթը,— իսկ վախեցնել ինքս էլ կարող եմ:

— Ես քո փոխարեն դա վաղուց էի արել,— ասաց Մարտինը:

Այդ աղջիկը բանավանում ապրում էր ահա արդեն կես տարի, նրանք միևնույն դպրոցում էին սովորում, և Սեթը նրան ճանաչում էր որպես համառ աղջկա: Նա հագնում էր ամառային կանաչավուն կարճ շրջազգեստ, նիհարավուն ուսերով, բարեկազմ, նա հիանալի պարում էր «շեյկ», և այդ ժամանակ նրա հարթ, ոսկեգույն վարսերը ցնցվում էին, նրա կանաչ աչքերը վայրենի խինդով փայլում էին: Նրա հետ կարելի էր նստել սրճարանում, և կողքից դա անպայման ուշադրություն պիտի գրավեր:

— Մենք էլ այստեղ չենք ապրելո՛ւ,— ասաց Նանան,— հայրիկին ուղարկում են Տաթև, մենք էլ նրա հետ գնում ենք: Այնտեղ ենք ապրելու:

Եվ գնաց: Սեթը մնաց կանգնած, ապա ճանապարհով իջավ ցած, դեպի թունելախորշերը, գետը: Ամբարտակի մոտ նրան սպասում էին տղաները: Վար իջնելով, նա դառնում նայում էր վեր. մթերային խանութից դեպի բանավան տանող ճանապարհը դատարկ էր: Նա ափսոսաց և տխրեց, որ այդ աղջկան չասաց «բարի ճանապարհ» և չտվեց իր հասցեն՝ «Անպայման կգրես: Լըսո՞ւմ ես, անպայմա՞ն»:




ՋԱՆՆԻ ՌՈԴԱՐԻ

2222 թվին տնային ռոբոտները լայն տարածում գտան: Դրանցից մեկն էլ Կատերինոն էր: Նա ապրում ու աշխատում էր պրոֆեսոր Իպիդորո Կորտիի ընտանիքում: Տանտերը Հռոմի համալսարանում պատմություն էր դասավանդում: Կատերինոն, ինչպես և մյուս տնային ռոբոտները կարողանում էր եփել-թխել, լվանալ ու արդուկել, կարգի բերել սենյակներն ու խոհանոցը: Նա ինքն էր գնումներ կատարում, վարում ծախսերի մատյանը, գրամեքենայով տպագրում, նոր գրքերի էջերը թղթատում և երեկոները տնեցիներին պատմում հարևանների բամբասանքներից: Մի խոսքով, նա մի կատարյալ մեխանիզմ էր: Եվ, ինչպես բոլոր մեխանիզմները, քնելու կարիք բնավ չէր զգում: Գիշերը, որպեսզի չձանձրանա, Կատերինոն մի անգամ ևս արդուկում էր պրոֆեսորի շալվարի կարերը կամ խաղալիքներ սարքում երեխաների համար: Գործերն ավարտելուց հետո, նա սկսում էր լուծել հերթական խաչբառը: Հենց դրա վրա էլ բավականին ժամանակ էր ծախսում:

Մի անգամ, երբ Կատերինոն ճիգ էր անում գտնելու տասնհինգ տառանոց մի գետի անուն, սուլոց լսեց: Նա առաջին անգամը՝ չէր լսում այդ տարօրինակ, հաճելի հնչյունները, որ գալիս էին հարևան սենյակից, որտեղ քնում էր պրոֆեսոր Իպիդորոն: Սակայն այս անգամ դրանք նրա մեջ անսովոր մտքեր հարուցեցին. «Իսկապես, մարդիկ ինչո՞ւ են քնում: Ի՞նչ են զգում այդ պահին»:

Կատերինոն վեր կացավ ու, ոտների ծայրերի վրա, գնաց մանկասենյակ: Ռոլանդոն ու Լուչիլլան միշտ քնում էին դուռը բաց թողած: Կատերինոն երկար-երկար նայեց քնած մանուկներին: Ռոլանդոյի դեմքը խաղաղ էր, իսկ Լուչիլլայի երեսին ժպիտ էր խաղում: «Նա ժպտում է,— վարմացավ Կատերինոն,— երազում, երևի, ինչ-որ հաճելի բան է տեսնում: Բայց ի՞նչ կարելի է տեսնել փակ աչքերով»:

Ռոբոտը վերադարձավ հյուրասենյակ և՛ երկա՜րերկար խորհեց: «Ես էլ կփորձեմ քնել»,— որոշեց նա:

Ռոբոտները գոյություն ունեին արդեն հարյուր տարի, բայց մինչև հիմա ոչ մեկի մտքով չէր անցել այսպիսի մի հանդուգն միտք:

«Բարի գիշե՜ր, Կատերինո՛,— ասաց ինքն իրեն:— Բարի երազնե՜ր քեզ»,— ավելացրեց նա՝ հիշելով այն, ինչ սենյորա Լուիզան ամեն երեկո, անկողին դնելիս, ասում էր իր երեխաներին:

Կատերինոն նկատել էր, որ իր տերերի առաջին գործն այն է լինում, որ փակում են աչքները: Փորձեց հետևել նրանց օրինակին, բայց նրա աչքերը, ավաղ, այնպես էին սարքված, որ չէին փակվում: Նա կոպեր չուներ: Կատերինոն վեր կացավ, մի ստվարաթղթի կտորից երկու բոլորակ կտրեց, ամրացրեց աչքերին ու նորից փռվեց տեղը: Սակայն քունը չեկավ, իսկ փակ աչքերով պառկելը շատ հոգնեցուցիչ էր: Մանավանդ որ չէր տեսնում այնպիսի մի բան, որ ժպիտ շարժեր: Տեսնում էր միայն թանձր խավար, և դա ջղայնացնում էր նրան:

Գիշերն անցկացրեց քնելու ապարդյուն փորձեր անելով: Բայց Կատերինոն չհանձնվեց, և առավոտյան, սովորականի պես, երբ սուրճի գավաթը սկուտեղին դրած՝ գնաց տիրոջն արթնացնելու, որոշեց ավելի ուշադիր լինել: Այդ օրը նկատեց, որ պրոֆեսորը ուտելուց հետո իսկույն ևեթ հարմար տեղավորվեց բազկաթոռի մեջ, որպեսզի թերթ կարդա: Մի երկու րոպե նա մտացրիվ աչքի անցկացրեց էջերը, ապա տիրոջ կոպերը փակվեցին, թերթն ընկավ, և սկսվեց հրաշալի երաժշտությունը:

Գիշերը, երբ դեռ բոլորը նոր էին պառկել, Կատերինոն նստեց բազկաթոռին ու սկսեց թերթ կարդալ: Նա թերթը ծայրից-ծայր կարդաց՝ ներառյալ նաև ռեկլամները, բայց քունը մո՜տ չեկավ: Սկսեց հաշվել բոլոր էջերի բոլոր կետերն ու ստորակետերը, ապա՝ այն բառերը, որոնք սկսվում էին «ա»-ով, բայց դա էլ չօգնեց:

Կատերինոն շարունակեց իր վննումները և մի անգամ ճաշից հետո լսեց, թե ինչպես սինյորա Լուիզան ամուսնուն ասաց.

— Երեկ երեկոյան, որպեսզի քունս տաներ, հարկ եղավ ոչխարներ հաշվել: Գիտե՞ս, թե քանիսը հաշվեցի. 1528 հատ: Բայց էլի, առանց քնաբեր դեղի, բան դուրս չեկավ:

Կատերինոն ամբողջ երկու օր մտորում էր, թե դա ի՞նչ կարող էր նշանակել ու վերջապես Ռոլանդոյին դիմեց: Այդ հարցը տալիս Կատերինոն ամոթի այրող զգացում ապրեց: Նրան թվաց, թե ինքը տղայից ուզում է դուրս կորզել մի խորը գաղտնիք:

— Ինչո՞ւ եք ոչխար հաշվում, երբ քնել եք ուզում: Եվ դա ինչպե՞ս է արվում:




— Շատ հասարակ։ Աչքերդ փակում ես ու պատկերացնում, թե առջևդ ոչխարներ կան,— պատասխանեց Ռոլանդինոն, չկասկածելով, որ ինքը դավաճանում է մարդկային ցեղին։— Ապա պետք է պատկերացնես, թե մի չափար կա, որի վրայից մեկ առ մեկ թռչում են ոչխարները։ Դե, հետո էլ սկսիր հաշվել՝ մեկ, երկու, երեք, մինչև քունդ տանի։ Ինձ ոչ մի անգամ չի հաջողվել երեսունից ավելին հաշվել։ Լուչիլան մի անգամ հաշվել է 42 հատ։ Բայց դա ինքն է ասում, իսկ ես նրան այնքան էլ չեմ հավատում։

Տեր դառնալով այդքան հուզիչ մի գաղտնիքի, Կատերինոն հազիվ վսպեց իրեն, որ չծլկի լողասենյակ ու ոչխար հաշվի։ Վերջապես գիշեր եղավ և Կատերինոն կարողացավ սկսել փորձը։ Նա փակեց աչքերն ու փորձեց ոչխարներ տեսնել։ Սկզբում տեսնում էր միայն մի ճերմակ ամպիկ։ Ապա ամպիկն սկսեց որոշակի ձև ստանալ. հայտնվեց ոչխարի գլխի շատ նման մի բան։ Հետո աճեցին ոտքեր, պոչ, և ամպիկը վերածվեց իսկական ոչխարի։ Չափարի գործն էր վատ գնում։ Կատերինոն գյուղում երբեք չէր եղել և չգիտեր, թե չափարն ինչ բան է։ Եվ նա վճռեց չափարը փոխարինել աթոռով ու, պատկերացնելով խոհանոցի սպիտակ աթոռը, ոչխարին ստիպեց մոտենալ դրան։

— Ցատկի՛ր,— հրամայեց նա։

Ոչխարը հնազանդորեն թռավ անցավ աթոռից դենը ու անհետացավ։ Կատերինոն վայրկենապես փորձեց պատկերացնել երկրորդ ոչխարին, բայց մինչև ամպից նա կմարմնավորվեր իսկականի, աթոռը չքվեց։ Հարկ եղավ ամեն ինչ սկսել էն գլխից։ Բայց երբ աթոռը վերադարձրեց իր տեղը, ոչխարը հրաժարվեց թռչել դրա վրայով։

Կատերինոն նայեց ժամացույցին և նկատեց, որ երկու երևակայական ոչխար սարքելու վրա վատնել է ամբողջ չորս ժամ։ Նա վեր թռավ ու նետվեց դեպի խոհանոցը, որ մի անգամ էլ արդուկի պրոֆեսոր Կորտիի շալվարները։

«Ինչ-որ է,— մխիթարեց իրեն,— մի ոչխարի ստիպեցի թռչել։ Մի՛ հանձնվիր, Կատերինո՛, մի՛ կորցրու հավատդ։ Վաղը երկու ոչխար կլինի, վաղը չէ մյուս օր՝ երեքը, և ի վերջո դու կհաղթես»։

Մանրամասն չեմ պատմի, թե ինչ ջանքեր գործադրեց Կատերինոն, մինչև որ, երեք ամիս հետո, կարողացավ թռցնել հարյուր ոչխար։ Հարյուրմեկերորդին նա չտեսավ, որովհետև արդեն անո՜ւշ-անուշ քնել էր։ Քնել էր ընդամենը մի քանի րոպե, բայց որ իրոք քնել էր, ոչ մի կասկած չկար։ Շաբաթվա վերջում ռոբոտը քնեց արդեն երեք լրիվ ժամ։ Եվ նա առաջին անգամ երազ տեսավ, իբրև, պրոֆեսոր Իպիդորո Կորտին ռոբոտի կոշիկներն է մաքրում ու փողկապը կապում։ Հաճելի՜, հրաշալի՜ երազ։

Ժամանակն է ձեզ տեղեկացնելու, որ փողոցի այն կողմում ապրում էր հարգարժան պրոֆեսոր Տիբոլլան։ Մի անգամ, գիշերը, նա արթնացավ ծարավից և խոհանոց գնաց մի բաժակ սառը ջուր խմելու։ Նախքան նորից անկողին կմտներ, ըստ իր սովորության, մի փոքր դուրս նայեց լուսամուտից։ Իսկ նրա ու պրոֆեսոր Կորտիի հյուրասենյակների լուսամուտները դեմ-դիմաց էին։ Եվ ինչ. տեսնի լավ է. կոլեգայի հյուրասենյակի լույսը վառվում է և ռոբոտ Կատերինոն քնած է մանկիկի անմեղ քնով։ Ականջ դնելով, Տիբոլլան պարզորոշ լսեց մեղմ մի սուլոց։ Այսպես, ուրեմն, ի լրումն ամենի, այդ ռոբոտը դեռ խռմփացնում էլ է։

Նա բաց արավ լուսամուտը և ուժգին գոռաց.

— Տագնա՜պ, տագնա՜պ, ամենատագնա՜պ...

Մի քանի րոպեում արթնացավ ամբողջ փողոցը։ Մարդիկ պատշգամբ վազեցին՝ շապիկներով ու պիժամաներով։ Մի քանիսը, իմանալով, թե ինչ է եղել, փողոց իջան ու ամբոխվեցին պրոֆեսոր Կորտիի տան մոտ։

Աղմուկ-աղաղակից վարթնած պրոֆեսորը և նրա կինը դուրս կախվեցին լուսամուտից։

— Ի՞նչ է պատահել։ Երկրաշա՞րժ է։

— Վատթա՞րը, դրանից վատթա՜ր մի բան,— գոչեց պրոֆեսոր Տիբոլլան։— Դուք դինամիտի վրա եք քնում, հարգելի՛ կոլեգա։

— Ես զբաղվում եմ հին պատմությամբ,— ասաց պրոֆեսոր Իպիդորոն,— իսկ հին աշխարհում, ինչպես գիտեք, դինամիտ չի եղել։ Այն հայտնագործել են շատ ավելի ուշ։



— Մենք խաղաղ մարդիկ ենք,— երկչոտ ավելացրեց սինյորա Լուիզան,— և ոչ ոքի չենք խանգարում: Ճիշտ է, Ռոլանդոն երեկ ֆուտբոլի գնդակով ջարդեց հարևանի ապակին, բայց չէ՞ որ մենք համաձայնեցինք վնասը հատուցել: Չեմ հասկանում, ինչո՞վ ենք մենք...

— Լավ կլինի հյուրասենյակից իմանաք,— ընդհատեց նրան պրոֆեսոր Տիբոլլան:

Նրանք տարակուսանքով իրար նայեցին և որոշեցին լսել տարօրինակ խորհուրդը. գնացին դեպի հյուրասենյակը:

Այդ ժամանակ Կատերինոն քաղցր քնած էր: Նրա մետաղե դեմքին խաղում էր մեղմ մի ժպիտ: Նա խռռմփում էր, բայց այնքան երաժշտական ու ռիթմիկ, որ այդ թեթև սուլոցն ու դժժոցը կարելի էր համեմատել թավջութակի նվագի հետ:

— Կատերինո՛,— աղիողորմ ձայնով կանչեց սենյորինա Լուիզան:

— Կատերինո՛,— բավականին խիստ ձայն տվեց պրոֆեսոր Իպիդորոն:

Իսկ պրոֆեսոր Տիբոլլան փողոցից գոռում էր.

— Մո՛ւրճ է պետք, մո՛ւրճ: Բարեկա՛մս, մո՛ւրճ առեք ու մի լավ թխկացրե՛ք դրա թմրած կոկոլին: Իսկ եթե դա չօգնի, ապա պետք է նրա միջով հոսանք բաց թողնել:

Պրոֆեսոր Կորտին բերեց մուրճը ու բարձրացրեց, որ խփի ռոբոտի գլխին:

— Զգո՛ւյշ, պգո՛ւյշ,— աղերսում էր կինը:— Դու հո գիտես, թե նա որքա՛ն թանկ է նստել: Չէ՞ որ մինչև օրս լրիվ չենք մուծել նրա արժեքը:

Փողոցում, պատշգամբներում, լուսամուտներում մարդիկ շնչակտուր սպասում էին: Գիշերային լռության մեջ մուրճի հարվածներն իջնում էին որպես դուռը թակող ճակատագրի հարվածներ: Դո՛ւմ, դո՛ւմ, դո՛ւմ...

Վերջապես Կատերինոն հորանջեց, ճմլկտաց, ձեռքերը շփեց: Բոլոր դիտակետերից միաձայն մի «ա՜խ» տարածվեց: Կատերինոն վեր ցատկեց և իսկույն գլխի ընկավ, որ համարյա քաղաքի կեսը հետևում է իրեն:

— Քնե՞լ էի,— հարցրեց նա:

Սարսափ, մղձավանջ: Էկտին դեռ հարցնում էլ է...

Լավեց սիրենայի ոռնոց: Ոստիկանները Կատերինոյին ձերբակալեցին, դրին ֆուրգոնի մեջ ու տարան: Չնայած կեսգիշերին, դատ եղավ ու խեղճին դատապարտեցին երկուշաբաթյա բանտարկության:

Դատավորը մի խորամանկ ու բազմափորձ մարդ էր: Նա ոստիկանությանը խորհուրդ տվեց գաղտնի պահել այդ տհաճ պատմությունը: Եվ հաջորդ օրը ոչ մի թերթ իր ընթերցողներին չտեղեկացրեց ռոբոտի հանցագործության մասին: Այնուամենայնիվ, Կատերինոյի արթնացման տեսարանին հետևում էին ոչ միայն մարդիկ, այլև բազմաթիվ տնային ռոբոտներ: Դեպքի վայրին ամենից մոտ էր Թերեզինոն՝ պրոֆեսոր Տիբոլլայի ռոբոտը: Նա չխառնվեց իր տիրոջ ու պրոֆեսոր Կորտիի աշխույժ խոսակցությանը, բայց կանգնելով խոհանոցի լուսամուտի առաջ, որսաց ամեն մի բառը: Հարևան տներում էլ ռոբոտները քնած չէին: Երեքշաբթի՝ ռոբոտների հանգստյան օրը, երբ նրանք հավաքվում են քաղաքային այգում, Թերեզինոն ընկերներին մանրամասն պատմեց անհավատալի եղելությունը:

— Հավատո՞ւմ եք, սիրելի՛ կոլեգաներ, Կատերինոն քնել էր ճիշտ ու ճիշտ մարդկանց նման: Ո՛չ, դեռ մի բան էլ նրանցից լավ: Նա չէր խռմփացնում, ինչպես նրանցից շատերը, այլ՝ արձակում էր երաժշտական հրաշալի հնչյուններ: Դա մի իսկակա՜ն էլեկտրոնային սիմֆոնիա էր:

Ռոբոտները՝ տղամարդիկ ու կանայք, մեծագույն հուզմունքով լսեցին նրա պատմածը: Նրանց երկաթե գլուխներում, ուր վետեղված էին էլեկտրոնային ուղեղներ, 3000 վոլտանոց հոսանքի լիցքի նման, փայլատակեց մի միտք. «Բայց, ախր, մե՛նք էլ կարող ենք քնել»: Կարևորն այն է, որ իմանանք քնի նախապատրաստման ու իրագործման ձևը: Սակայն դա առայժմ մնում էր որպես մեն-միայն Կատերինոյի գաղտնիքը, իսկ նա, ավաղ, նստած էր բանտում: Ուրեմն, պետք էր սպասել, մինչև որ դուրս գար ու գաղտնիքը հայտնե՞ր նրանց: Ո՛չ: Դա պատիվ չէր բերի էլեկտրոնային կատարյալ ուղեղով օժտված ռոբոտներին:

Ելքը Թերեզինոն գտավ: Նա գիտեր, որ Կատերինոն հատկապես մոտ էր պրոֆեսոր Կորտիի երեխաների հետ: Փոքրիկ Ռոլանդոն, որի վստահությունը Թերեզինոն լիովին շահեց՝ նրան ռեզինե ծամոն նվիրելով, պատմեց, որ, հավանաբար, Կատերինոյին հաջողվել է չափարից թռչող ոչխարներ հաշվել:

Հենց նույն գիշերը Թերեզինոն փորձեց կրկնել Կատերինոյի արածը և, պատկերացնո՞ւմ եք, իսկույն հաջողության հասավ: Դե, դա զարմանալի չէ. դժվարը հայտնագործողի համար է լինում, իսկ հաջորդները գնում են տրորված ճանապարհով:

Երեք օր անց ողջ քաղաքն արթնացավ անսովոր մի երաժշտությունից. հապարավոր ռոբոտներ, բազկ-



# ԵՎ ԿԵՏԱՁԱԳՆ ԷՐ ԼԱՎԸ

ԳԵՈՐԳԻ ՎԼԱԴԻՄՈՎ

Չգիտեմ էլ, թե այդ ինչպես եղավ, որ նա ընկավ մեր ցանցի մեջ: Սովորաբար կետերը ծովատառեխի վրա չեն հարձակվում, ինչպես շնաձկները: Իսկ սա դեռ կետ էլ չէր, այլ մի բոլորովին կաթնակեր կետաձագ: Գուցե նա իր մայրիկի՞ն էր կորցրել և, լեղաճաք, ծովում այնքան այս ու այն կողմ նետվել, մինչև դեմ էր առել մեր ցանցակարթին: Խճճվել էր ցանցի մեջ, աշխատել դուրս պրծնել և ավելի էր խճճվել:

Լուսադեմին շտուրմանը վազեվազ ներս ընկավ անձնակազմի սենյակը.

— Տղանե՛ր, ցանցերը հանե՛լ: Շտա՛պ: Մի հարամի է ընկել ցանցի մեջ, նավը տատանում է:

Ականջ դրինք՝ ճիշտ որ, շոգենավը տարուբերվում է: Էլ ի՛նչ, գնացինք, ինչքան ցանց կար դուրս հանեցինք, դուրս բերինք այդ հարամուն նավեզր: Պարզվեց, որ կապույտ կետաձագ է: Հանեցինք, հետո ի՞նչ անեինք: Ազատվեի՞նք նրանից, նետեի՞նք ցանցակարթից մի երկու հարյուր մետր հեռու: Բայց բոլորս խղճում էինք, կետաձագը կոչնչանար, չէ՞ որ նա ցանցի մեջ կաշկանդված էր, լողակները չէր կարողանա շարժել: Իսկ կապերը կտրատել հնարավոր չէր. դրա համար սուզակներ պետք էր կանչել, վտանգավոր էր լող տալով մոտենալ նրան: Կսպաներ ու չէր էլ իմանա, որ սպանեց:

— Քաշեք տախտակամա՛ծ,— լսվեց հրաման:

Ուրիշ ի՞նչ էր մնում անելու:

Գործի գցեցինք այն բոլոր սարքերը, որ լինում է նավի վրա: Մինչև իսկ մեկն առաջարկեց խարսխի ճախարակն էլ հարմարեցնել, բայց վախեցանք շղթան կետաձագին վնասվածք պատճառի: Մենք նրան դուրս բերինք այսպես՝ և՛ սարքերով, և՛ ձեռքերով քաշեցինք նախ պոչը, հետո բոլոր մնացածը: Կաթնակերը՝ կաթնակեր, բայց ուպածից պես մի իսկա գազան էր, մի նավակողից պոչն էր կախ ընկած, մյուսի վրա գլուխն էր: Մենք ցանցերը կտրատեցինք, հեռացրինք, իսկ նա իր քեֆին պառկած է, միայն երբեմն մաշկն է ցնցում: Բայց ասել ցնցվում է՝ քիչ է, դրանից ամբողջ նավը ճռռում է:

Մեկը գլխի ընկավ, որ հարկավոր է ծովից ջուր քաշել, լցնել

---

աթոռներին, խոհանոցների սեղանիկների մոտ, պատըշգամբներում քնած էին՝ ներդաշնակ սվսվոցով: Ոստիկանությունն ու հրդեհաշեջները տառացիորեն գժվում էին հեռախոսային զանգերից: Բայց նրանք հո չէի՞ն կարող Հռոմի բոլոր ռոբոտներին ձերբակալել: Այդպիսի ահռելի բանտ էլ չկար:

Նույն այն դատավորը, որը Կատերինոյին էր դատապարտել, հանդես գալով հեռացույցով, իշխանությանն առաջարկեց համաձայնության գալ ռոբոտների հետ: Իշխանությունն էլ, ճիշտն ասած, ուրիշ ճար չուներ: Հարկադրված եղավ համաձայնություն կնքել: Հռոմից հետո հերթը եկավ Միլանին, ապա՝ Մարսելին, Լոնդոնին և Տիմբուկտուին:

Երբ Կատերինոն բանտից դուրս եկավ, ճանապարհի երկու կողմերում նրան դիմավորում էին հազարավոր ռոբոտներ: Նրանք գոչեցին. «Կեցցե՛ մեր փառապանծ Կատերինոն»,— և ուժգին ծափահարեցին: Իսկ Վիբիալդին՝ տրամվայ քշողների նվագախմբի դիրիժորի ռոբոտը, այդ հանդիսավոր իրադարձության առթիվ մի հիանալի հիմն էր հորինել:

Ի միջիայլոց, եթե Հռոմում կա որևէ սուրբ ու անձեռնմխելի մի բան, դա հենց ինքը քունն է: Հռոմեացիները սիրում են քնել գիշերը, քնել ցերեկը, բայց նրանք հատկապես սիրում են քնել ճաշից հետո: Մի շատ լուրջ գիտնական, վերլուծելով Կատրինոյի հետ կապված պատմությունը, շարադրել է իր եզրակացությունները 2400 էջանոց գրքում: Եվ նրա խորաթափանց հետազոտությունների փառք ու պսակն է կազմում հետևյալ հատվածը, որ ամփոփում է գիտական մտքի այդ նշանավոր երկը.

«Միայն Հռոմում, էլեկտրոնային ռոբոտի գլխում կարող էր ծնվել քնի հայտնաբերման միտքը: Աշխարհի ուրիշ ոչ մի քաղաքում չկան և չեն կարող լինել բարենպաստ պայմաններ՝ այդքան ինքնատիպ հայտնագործության համար»:

Թարգմ. Հ. ՀԱՐՑՅԱՆԻ

վրան, որպեսզի կաշին չչորանա: Հատուկ ծեփթափոխի կանգնեցինք մոտը: Եվ կետաձագը բոլորովին հանգստացավ, միայն շնչում էր սուլելով: Միրուն գույներ ուներ, վերևից՝ սևակապույտ, դեպի փորը գնալով՝ բաց էր դառնում: Եվ ի՞նչն էր զարմանալի. ծովի բոլոր կենդանիները պաղարյուն են, իսկ սրան, որ կպչում էիր՝ ո՛նց որ շոյես ձիու դունչը՝ ռունգերի մոտ:

Հիմա՞ ինչ անենք: Ցանցից հանեցինք, իսկ ինչպե՞ս գցեինք ծովը: Դրա համար նավեպր տանող հարմարանք էր պետք, իսկ այդպիսին ձըկնորսանավը չուներ: Շոգենավի վրա բոլոր աշխատանքները դադարեցվել էին, ձուկ չէինք փնտրում, ցանց չէինք նետում: Տախտակամածը կետաձագն էր բռնել: Եվ ո՛չ անցնելու տեղ կար, ո՛չ կարող էիր վրայից ցատկել: Փորձեցինք մագլցել վրան, բայց նա դրանից գազազեց, մարդկանց ցած նետեց վրայից: Բոցմանը ստիպված եղավ տախտակներից սանդուղք կցմցել, և մենք սկսեցինք դրա վրայով վազվզել՝ անձնակազմի սենյակից՝ դահլիճ, դահլիճից՝ անձնակազմի սենյակը: Այստեղ մեկը մի միտք հղացավ.

— Եկեք ծովատառեխի փոխարեն բազա հանձնենք սրան, մի ութը տոննա քաշ կունենա: Ինքը մեր պլանը խափանեց, ինքն էլ թող այն կատարի: Միևնույն է, մինչև բազա չգնանք, մենք նրան տեղաշարժ անել չենք կարող:

Արդեն բոլոր նավերից նկատել էին, որ մենք կետաձագ ենք տանում, մեր ռադիոհաղորդավարի համար գործ բացվեց, հարցնում էին.

— Ո՞ւր եք տանում կետին: Այդ հասակում նրա որսը արգելված է, պայմանագրին ծանոթ չե՞ք:

Պայմանագրի մասին մոռացել էինք: Մենք կետորսներ չէինք և կետի հետ գործ չէինք ունեցել: Մեր տրամադրությունը միանգամից ընկավ.

— Կետը գլխներիս փորձանք է դառնալու:

Բայց ի՞նչ կարող էինք անել: Միևնույն է, բազա պիտի գնայինք. այնտեղ կային մեքենաներ, սարքավորում: Ինչքան մոտենում էինք բազային, այնքան խռնվում էին մեր շուրջը նորվեգական, ֆրանսիական, անգլիական նավերը: Մի ութսուն նավ էր մեր ետևից ընկած գալիս, ծովատառեխը մոռացան, բոլորին միայն կետաձագն էր անհանգստացնում: Իսկ կետաձագն իր համար մեկնվել՝ շվշվացնում է, ոչ մի պայմանագրի մասին ոչ մի բան չգիտի:

Երբ արդեն մոտենում էինք բազային, մեր ճանապարհը կտրեց նորվեգական մի հածանավ և երեք ուղղաթիռ կախվեցին երկնքում. երևի օդից մեզ լուսանկարում էին:

Հածանավից մեզ հրամայեցին.

— Անմիջապես կետը ծո՛վը գցեք:

— Մենք հենց այդ էլ երազում ենք, բայց գցել չենք կարողանում:

— Հապա նա ինչպե՞ս հայտնվեց տախտակամածում:

— Մենք էլ ենք դրա վրա զարմացած:

Հիշում եմ այն առավոտը, երբ ափ հասանք: Ծովը միանգամայն հանդարտ էր: Քամին հազիվ էր շարժում կայմերի դրոշակները: Կապույտ երկինք, կապույտ ջուր, արև՝ ինչպես Ղրիմում հուլիսին: Եվ ամբողջ ծովը բռնված էր նավերով, բոլոր դրոշակների նավերով, բոլոր գույների, իսկ երկնքում դեռ կախված էին ուղղաթիռները: Բազայից մեզ համապատասխան հարմարանք մեկնեցին, և մենք կետաձագի պոչը ստորջրյա խութի կապեցինք: Հածանավն էլ մեզ խորհուրդ տվեց, թե ինչպես ապահովել կաշին վնասվելուց: Եվ հարմարանքը նրան ձգեց դեպի երկինք:

Այստեղ նա՝ կետաձագն արթնացավ, թափ առավ, օղակ-օղակ գալարվում էր: Իսկ մենք նրա տակից արագորեն ետ քաշվեցինք ու հեռացանք դեպի բաց ծովը: Հետո բազայից կապերը ետ քաշեցին և մեր կետաձագը ցատկեց ջուրը: Իսկույն էլի հայտնվեց, վերև տնկված պոչը թափահարեց, մի ճողփյուն՝ մեզ համար և գնաց խորքը:

Այդ ժամանակ թե ի՛նչ կատարվեց, ի՛նչ «կեցցեներ» բոլոր շոգենավերից, շչակների կանչ, հրթիռներ թռան երկինք:

Օրը տոնական էր դառել, ավնիվ խոսք: Լավ էլ օր էր, այնպե՛ս կապույտ ու արևոտ: Եվ կետաձագն էր լավը:

*Թարգմ. Թ. ԿԱՆԹԵՂՑԱՆԻ*



# ՄԱՐԴՆ ԻՐ ԱՆՈՒՆՈՎ Է ՄԱՐԴ

*Ա. ԳՈՐԲՈՎՍԿԻ*

## ԱՄԵՆԱՀԻՆ ԲԱՌԸ

*Հատուկ անուններն ամենահին բառերից են, որ երբևէ հնչել են մեր հողագնդում: Մարդկային գիտակցության դեռևս առաջին առկայծումների հետ ծնունդ է առել մարդու և իր անվան անքակտելի կապի պատկերացումը: Ամենահեռավոր ժամանակներից այդ պատկերացումը դարերի միջով ձգվում է մինչև մեր օրերը: Որևէ մեկի անունը լսելիս, մեր աչքի առջև պատկերանում է որոշակի մարդու կերպարանք: Ծանոթ մարդու հանդիպելիս՝ իսկույն մտաբերում ենք նրա անունը:*

*Կրոնական պատկերացումների առաջացման հետ մարդու անունը կարծես մարդու, նրա հոգու՝ «երկրորդ ես»-ի հոմանիշն է դառնում:*

*Ահա թե ինչու մարդու անունն իր մահից հետո պահպանելը դարձել*

է հատուկ մտահոգության առարկա: Դրա մեջ հոգու անմահության, անդրշիրիմյան գոյության երաշխիքն են տեսել:

Այստեղից էլ գալիս է մարդու անունն իր շիրիմին գրելու սովորույթը: Այսպիսով մարդու անունը հազարավոր տարիներ ավելի է ապրում ոչ միայն այդ անունը կրողից, այլև բոլոր այն մարդկանցից, որոնք երբևէ ճանաչել են նրան: Հնէաբանների բահերն արևի երես են հանում մեռած ժողովուրդների մոռացված լեզուներով փորագրված անունները: Տապանաքարերի վրա շումերյան սեպագրերով, արամեական գրերով, հին եգիպտական հիերոգլիֆներով փորագրված անուններն են միայն, որ մնացել են ինչ-որ ժամանակներում ապրած մարդկանցից:

## ՆՈՐ ԱՆՈՒՆ՝ ՆՈՐ ԲԱԽՏ

Եվ այսպես, հները կարծում էին, թե մարդու անձնավորությունն այնքան սերտորեն է կապված իր անվան հետ, որ այդ կապը նրա մահից հետո անգամ չի խզվում: Բայց ի՞նչ կպատահի, եթե որևէ մեկը որոշի հրաժարվել իր անունից և ուրիշ անունով կոչվել: Այդ դեպքում նախկին մարդն ասես կդադարի գոյություն ունենալուց և հանդես կգա իբրև մի այլ անձնավորություն:

Այս պատկերացման մեջ կա մի խորհուրդ, որ ամենահեռավոր ժամանակներից ի վեր դրվել է անվանափոխության սովորույթի մեջ: Իբրև կանոն, անվանափոխությունը կապված է մարդու կյանքում տեղի ունեցող ինչ-որ բեկման հետ:

Վանական օծվելիս մարդը վանքի շեմքից դուրս էր թողնում իր ոչ միայն նախկին կյանքը, այլև նախկին անունը: Կաթոլիկ հոգևորականները, ինչպես և միստիկական գաղտնի ընկերությունների անդամները, նոր անուններ էին ստանում: Ռուսաստանի հոգևոր ուսումնարանների ավարտողները ևս հրաժեշտ էին տալիս իրենց աշխարհիկ անուններին և կոչվում նոր անուններով[1]:

Դեռ հիմա էլ կան ցեղեր, որ փոխում են հիվանդ երեխայի անունը: Ասենք հիվանդ է Վարանգ անունով մի տղա: Նրան իսկույն դադարում են կոչել այդ անունով, նոր անուն են դնում տղային՝ Մաուրի: Չի կարելի ասել, թե այդ խորամանկության մեջ տրամաբանություն չկա, հիվանդությունը կպել է Վարանգին, բայց Վարանգն այլևս գոյություն չունի, ձեր առաջ Մաուրին է կանգնած: Ա՜յ, թե ինչպես կարելի է հիմարացնել հիվանդությանը:

Ճիշտ այսպես էլ դայակները (Ինդոնեզիա) տենդից կամ ուրիշ ծանր հիվանդությունից ապաքինվելուն պես, ամեն անգամ փոխում են իրենց անունը: Այդպես են վարվում ազատվելու համար իրենց նախկին անձնավորությունից, որի մոտ տանող ճամփան հիվանդությունն արդեն գիտեր:

Բայց ամենից խորամանկը, երևի, Բերինգի նեղուցի էսկիմոսներն են: Անունը փոխելով, նրանք մոլորեցնել են ուզում ոչ թե ինչ-որ տենդի կամ ուրիշ հիվանդության, այլ հենց մահվանը: Զգալով, որ ծերանում է, էսկիմոսը փոխում է անունը՝ կյանքը նորից սկսելու հույսով:

Երբ ձեր ծանոթ աղջիկներից մեկը ամուսնանալիս իր ազգանունը փոխարինի ամուսնու ազգանվամբ՝ հարցրեք, թե ինչու է այդպես վարվում: Նա հազիվ թե կարողանա պատասխանել: Այդ միանգամայն «ժամանակակից» սովորույթը, որ տարածված է միանգամայն քաղաքակիրթ ժողովուրդների մեջ, գալիս է նույն այդ հնագույն պատկերացումներից:

Անվան փոփոխությունը պետք է փոփոխություն առաջ բերի նաև մարդու և իր բախտի մեջ:

## ԱՆՈՒՆԸ ԳԱՂՏՆԻ ԵՆ ՊԱՀՈՒՄ

Հույն պատմիչ Հերոդոտը գրել է, թե Աֆրիկայում ապրում է մի ժողովուրդ, որն իբր հատուկ անուններ չունի: Հետագայում այդ հաղորդումը հաստատում չգտավ:



Ճանապարհորդները այդպիսի ժողովուրդ չհայտնաբերեցին: Դրա փոխարեն նրանք շատ ժողովուրդների մեջ նկատեցին հատուկ անունները հատկապես օտարերկրացիներից թաքցնելու սովորույթ:

Հաբեշստանում, օրինակ, մայրերը խնամքով թաքցնում են իրենց երեխաների անունները: Զուլուսների ցեղում միայն մայրը կամ հայրը կարող են մարդուն կոչել իր մանկական անունով: Մարդու իսկական անունը բարձրաձայն չասելու համար, զուլուսները գործադրում են անուղղակի կոչականների մի բարդ սիստեմ: Տարիք առած ամուսնացած կնոջը, օրինակ, կարելի է այսպես դիմել.

— Լսիր, օ՜, մայրդ Զիբվանայի:

---

[1] Այդպես էր նաև հայ լուսավորչական եկեղեցու կարգը, հոգևորական ձեռնադրվողը կոչվում էր նոր անունով: (Ս. Թ.)

Նրա սա դեռ վավակներ չունի, կարելի է դիմել այսպես.

— Օ՜ դու, դուստրդ Նարումբայի:

Հնդկական ընտանիքում նույնիսկ մարդ ու կին պետք է խուսափեն միմյանց անունով կոչելուց: Միմյանց դիմելու համար գոյություն ունի այսպիսի դարձվածքներ՝ «իմ երեխայի մայր» կամ «իմ երեխայի հայր»: Եթե կողմնակի մարդ հետաքրքրվի, թե ինչ է տան աղջկա անունը՝ դա կհամարվի շատ անվայելուչ վարմունք: Միայն դա բավական է մարդուն ետին մտքերի մեջ կասկածելու համար:

Նոր-Հիբրիդյան կղզիներում հիմա էլ, որպեսզի խուսափեն ուրիշի կնոջ անունը տալուց, այդպես են ասում.

— Ես տեսա քո ստվերին կոկոսի ընկույզ հավաքելիս:

Բանից դուրս է գալիս, որ սեփական անունը թաքցնելու սովորույթը կապված է մարդու և անվան միասնության նույն այդ հնագույն պատկերացման հետ: Ուրիշի անվանը տիրողը իբրև թե իշխանություն է ձեռք բերում այդ անունը կրողի վրա ու նրա գլխին կարող է փորձանք բերել:

Տարբեր ժողովուրդների մեջ այսքան տարածված ու կայունացած սովորույթները, ըստ երևույթին, չէին կարող ծագել, եթե հիմքեր չունենային առօրյա կյանքում: Դրանց բացատրությունը պետք է որոնել նախամարդու շուտ վիրավորվող և անկայուն հոգեբանության մեջ:

Կարելի է բերել Ավստրալիայի աբորիգների (բնիկների) «ոսկրով նշան բռնելու» սովորույթի օրինակը: Այն մարդը, որ իմանում էր, թե թշնամին կամ կախարդը իրեն նշան է բռնել ոսկրով ու կախարդանքի խոսքեր է ասել՝ տեղնուտեղը հիվանդանում էր, չէր ուտում և մեռնում էր մի քանի օրից:

Ճիշտ այդպես էլ ներշնչելու և ամենից առաջ ինքնաներշնչման ուժի հետ են կապված այն պատիժները, որ գալիս են տաբուն խախտողների գլխին: Ազգագրագետներից մեկը նկարագրել է այսպիսի մի դեպք, որ դիտել է Խաղաղ օվկիանոսի կղզիներից մեկում: Գիտնականին ուղեկցող բնիկը կերել է ճամփեզրին թափված պտուղները: Հետո պարզվել է, որ դրանք ցեղապետի կերակրի մնացորդներն էին: Նրա կերակուրը համարվել է տաբու, որի խախտողը պետք է մեռնի: Հենց որ իմացել է, թե ինչ է արել՝ դժբախտը ծանր թունավորման նշաններ է ցույց տվել:

Զարմանալի չէ, որ պարզունակ մարդը, իմանալով, որ իրեն կախարդել են, իսկապես հիվանդացել է, կորցրել է շարժվելու կարողությունը և նույնիսկ մեռել:

Բայց ամեն մի կախարդանք պետք է ստույգ հասցե ունենար: Այդ հասցեն մարդու անունն էր:

Ահա թե նման մի ծիսակատարություն ինչպես է նկարագրված հնդկական հնագույն մի գրքում. «Զոհաբերության կրակի բորբոքման ժամին պետք է ասել. «Դու այրվում ես իմ վառ կրակում, ես քեզ զրկում եմ շնչելուց ու արտաշնչելուց»: Հետո պետք է տալ թշնամու անունը: «Դու այրվում ես իմ վառ կրակում, ես քեզ զրկում եմ հույսից ու ապավենից»: Հետո նորից է կրկնվում թշնամու անունը...»

Անո՜ւնը, անո՜ւնը, անո՜ւնը:

Ահա թե ինչու, նման կախարդական արարողությունների ահից պարզունակ մարդը ջանում է թաքցնել իր անունը, չասել օտար մարդուն, որը կարող էր վնաս բերել իրեն:

Ապահովության համար Ավստրալիայի բնիկները երկու անուն էին ունենում, մեկը՝ ընդհանուր գործածության, մյուսը՝ գաղտնի, որ թաքուն էր պահվում:

Երկու անվան սովորույթը կար նաև հին Եգիպտոսում. այսպես կոչված «փոքրը»՝ առօրյա կյանքի համար, իսկ «մեծը»՝ խնամքով թաքցնելու:

Սակայն այս ամենը անցյալ է, մարդկության հնագույն անցյալը: Իսկ ինչ է կատարվում այսօր: Իհարկե, այսօր մենք չենք թաքցնում մեր անձնական անունները: Բայց նկատել եք, որ հիմա էլ մարդու անձնանունը ամենքը չեն կարող տալ: Սովորաբար մարդուն իր անունով կոչում է ծանոթը, նույնիսկ մտերիմը միայն: Եթե այդպես վարվի մեկը, որ այդ անելու բարոյական իրավունքը չունի, կարող է դիտվել իբրև վիրավորական տնավարություն:

Հենց այդպես էլ այդ ընկալել է, օրինակ, բանաստեղծ Մ. Սվետլովը, երբ իր երիտասարդ գրչակիցներից մեկը նրան դիմել է միայն անունը տալով:

— Ի՞նչ կարիք կա ձևականության,— ընդհատել է նրան Սվետլովը,— ինձ պարզապես Միխայիլ Արկադևիչ կոչեցեք:

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ





Հյուսիսային Կովկասի մեծագլուխ հաղթանդամ գայլը

# ԳԱՅԼ

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

Գայլը պատկանում է շնազգիների ընտանիքին: Մեզ մոտ այդ ընտանիքի մյուս ներկայացուցիչներն են՝ աղվեսը և շնագայլը:

Այս գազանը շատ խոշոր չէ. նրա հասուն արուն մեզ մոտ կշռում է շուրջ 30 կիլոգրամ, այսինքն՝ խոշոր շան չափ: Բայց Հյուսիսային Կովկասի և առհասարակ Հյուսիսի գայլերը մեկուկես-երկու անգամ մարմնեղ են մեր գայլերից:

Իր մարմնի համեմատությամբ շատ ուժեղ և տոկուն գազան է գայլը: Փոքր ժամանակս տեսել եմ, թե ինչպես իրենից կրկնակի ծանր խոյին շալակն է գցել ու փախցրել սարն ի վեր...

Դունչը սուր է, ճակատը շատ լայն, ոտքերը երկար, կուրծքը լայն, փորը ներս ընկած: Գույնը գորշ է ու թխագորշ: Մեր գայլի մեջքի և բաշի մազերը երկար են և, երբ կայրանում է և մազերը ցից-ցից կանգնում են, ահարկու տեսք է ընդունում: Աչքերը խոշոր են և գիշերային մթության մեջ փայլում են: Մի անգամ գիշերով գալիս էինք Բասարգեչարից: Դա-րա գյուղը անցանք, ընկերս, թե՝ «Վերևում էն ի՞նչ ճրագներ են, էնտեղ հո գյուղ չկա՞»... Պատասխանի փոխարեն վարորդին պատվիրեցի.

— Քշի՛ր դեպի ճրագները... արա՛գ քշիր... Տղե՛րք, կարտեչնե՛ր դրեք հրացանների մեջ...

Թեք լանջն ի վեր մեքենան սուրում է դեպի ճրագները, իսկ սրանք դեռ անշարժ կայծկլտում են ֆոսֆորային փայլով: Մոտեցանք՝ ճրագները փախան: Ա՜յ քեզ գյուղ... Մեքենան հասավ հետևներից, և մենք սկսեցինք արճիճ տեղալ փախչող գազանների հետևից: Ոհմակը բաղկացած էր 11 գլխից, որից մեկը վոհ գնաց մեր կրակոցներին:

Դա հունվար ամսին էր: Գայլը սովորաբար խմբով չի շրջում, ինքն է, «ամուսինը», ձագերը: Բայց

Հավիվ թե կարելի է մարդուն իր տեղը ցույց տալ ավելի նուրբ հեգնանքով:

Անձնանվան ավանդական «անմատչելիությունը» իր կնիքն է դրել ամբողջ արևմտաեվրոպական վարվելաձևի վրա: Անգլիայում կամ Ֆրանսիայում, օրինակ, միայն շատ մտերիմ մարդիկ կարող են միմյանց կոչել անձնանուններով: Ազգանունն այն սահմանն է, որ անպատշաճ են համարում՝ անցնել նույնիսկ տասնյակ տարիների ծանոթները:

Հետաքրքրական է, որ, հետևելով անգլիական ազնվական շրջանների վարվելակերպին, Ջորջ Բայրոնն, օրինակ, իր նույնիսկ ամենամտերիմ մարդկանց, իբրև կանոն, անունով չէր կոչում: Դա չի նշանակում, թե Բայրոնը մտերիմներ չի ունեցել: Դա նշանակում է միայն, որ նրա ժամանակ անձնանուն չտալու սովորությունը դեռևս շատ ուժեղ էր:

Բայրոնից հարյուր տարի առաջ, 1722-ին, Լոնդոնում լույս է տեսել Դանիել Դեֆոյի «Մոլ ֆլենդերս» վեպը: Գրքի հերոսները, մոտ ազգականներ, քույրեր ու եղբայրներ, միմյանց անունը երբեք չեն տալիս: Նրանք գերադասում են ասել «քույր» կամ «եղբայր»:

Մեզ կարող է տարօրինակ թվալ նաև այն, որ Անգլիայում, մինչև անցյալ դարի սկիզբը, երեխաներն իրենց ծնողներին ոչ թե «հայրիկ» ու «մայրիկ» էին ասում, այլ «մադամ» և «սըր» (տիկին և պարոն):

Բայց եթե լավ միտք անենք, ոչ պակաս տարօրինակ է ծնողների անունների հետ կապված այն սովորույթը, որ հիմա էլ գոյություն ունի մեր ընտանիքներում: Երեխաների աչքում ծնողներն անուններ չունեն: Կան միայն այդ հասկացությունն արտահայտող բառեր՝ «մայրիկ», «հայրիկ»: Պատկերացրեք, թե այժմ որքան տարօրինակ ու նույնիսկ վիրավորական կհնչեր, եթե ձեր մորը անունով կոչեիք:

Ըստ երևույթին, այս յուրահատուկ արգելքը ևս ընդհանուր շղթայի մի օղակն է:

(Շարունակելի)

ինչո՞ւ մեծ էր մեր տեսած խումբը: Հավաքվել էին «հարսանիքի». գայլերի կուգավորման շրջանն էր:

Ձմռանը խմբեր են կազմում նաև կողոպուտի նըպատակով. գյուղերն են մտնում, շներ փախցնում, հարձակվում են նույնիսկ ճամփորդների վրա, առհասարակ ձմեռը, քաղցած ժամանակ, գայլը դառնում է համարձակ և վտանգավոր: Իսկ տարվա մյուս եղանակներին, երբ կուշտ է՝ կցուշ է, թերևս ամենից կցուշը մեր բնության մեջ ապրող բոլոր գազաններից:

Զգույշ է և խելացի: Այդ բանը հաստատող մի քանի օրինակներ բերեմ:

Պատանի ժամանակս որ օրը հետներս վենք չէր լինում, գայլերը աներեսի նման շրջում էին մեր հոտի և նախրի մոտերքում: Եթե շների ահից չէին էլ հարձակվում, պատահում էր՝ պպզած նայում էին ոչխարների դմակներին և բոլորովին անտարբեր էին մեր սպառնալիքների և հարայ-հրոցի նկատմամբ: Ասում էինք. «Ա՜խ, մի հրացա՜ն...»

Հաջորդ օրը զինված էինք գալիս՝ գայլ չկա: Թաքուն նայում էին և տեսնում, որ վենք կա մոտներս, չէին մոտենում հոտին:

Իմ որսորդության երկար տարիների ընթացքում շատ անգամ եմ գայլերի հանդիպել, բայց միշտ էլ փախել են ինձնից խուճապահար, որովհետև մոտս միշտ էլ վենք է եղել. գայլը վենքը դեռ հեռվից է ճանաչում:

Հետո: Որքան էլ քաղցած լինի, իր բնի շրջակայքում վնաս չի տալիս ընտանի անասուններին: Գիտի, որ տերը կհետապնդի, կփնտրի իրեն և կարող է գտնել իր որջը, ուր իր սիրելի ձագուկներն են: Այդ պատճառով էլ, ասում են, ձագեր ունեցող գայլի որջի շրջակայքը Ռուսական հարթությունում մոտ 25—30 կիլոմետր շառավիղով ապատ է մնում այդ գազանի ասպատակություններից: Ահա ձեզ և՛ խելք, և՛ կարմանալի կցուշություն: Եվ, վերջապես, կցուշությունից չէ՞, որ ամեն տարի մեր երկրում 20—25 անգամ ավելի շատ աղվես է սպանվում, քան գայլ, մինչդեռ ժողովուրդն այն կարծիքին է (և դա արտահայտված է նաև իր ստեղծած առակներում), որ իբր աղվեսն է խորամանկության տիպարը: Ճիշտ չի, իմ կարծիքով գայլը նրանից խորամանկ է:

Մեր հանրապետության ո՞ր մասերում է հանդիպում այդ գազանը: Բոլոր մասերում: Բայց ամենից շատ՝ ոչխարաբուծական ֆերմաների շուրջը, քանի որ նրա սննդի մեջ ոչխարը պատվավոր տեղ է գրավում, թե՛ այն պատճառով, որ շատ համեղ է (մանավանդ դմակը), թե՛ նրանով, որ այդ ողորմելի խոտաճարակը պաշտպանվելու ոչ մի փորձ չի անում: Ուստի գայլերը ամառը ոչխարի հոտերի հետ սար են բարձրանում, ապրում ալպիական գոտում, հաճախ այնտեղ էլ ձագեր հանում ու մեծացնում՝ հանրային ու մասնավոր հոտերի հաշվին: Աշնանը, երբ հոտերը սարից իջնում են ձմեռանոցները և գյուղերը, գայլերն էլ են իջնում: Եթե հոտը քշում են Արաքսի և Քռի մեղմ հովիտները՝ ձմեռային արոտի, իմացե՛ք, որ նրանց հետևից այդ հովիտներն են իջնում նաև գայլերը:

Գայլը ոչխարի պատուհասն է: Երբ անասնապահ էի, շատ անգամ եմ ականատես եղել ոչխարների ջարդին գայլերի կողմից: Մի անգամ գիշերը ծակել էր մեր հարևանի փարախի տանիքը, ներս ընկել և 28 ոչխար խեղդել: Մի ուրիշ անգամ մեր բարեկամ Պավլեի 500 գլխից բաղկացած հոտը գայլերը «կտրկան արին», ցրիվ տվին անտառներում և երկու օր տևեց, մինչև մարդիկ սար ու ձոր ընկած՝ հավաքեցին ցըրված հոտը: Հավաքեցին, բայց վնասը մեծ էր՝ պակասում էր 62 ոչխար, որոնց դիակները գտան կանաչ անտառներում ընկած: Այդ ահռելի կոտորածը կատարել էր գայլի միայն մեկ ընտանիք՝ ծնողները և հասունացած ձագերը:



Ինչո՞ւ է այդքան կոտորում, երբ իր սննդի համար դրա մի փոքր մասն էլ է բավական։ Որովհետև արյունարբու է, կենդանի արարածներ ոչնչացնելու անկուսպ կիրք ունի մեջը։ Դրանով էլ շատ վնասակար գազան է գայլը։ Ես տեսել եմ, թե ինչպես գայլերը «շղթա տված» առաջ են եկել և այծյամներին դեմ արել ժայռերին։ Տեսել եմ, թե ինչպես են քարայծեր որսում Վեդու լեռներում։ Թռչուն, նապաստակ, վայրի ոչխար, ինչ հանդիպի, կոհ է գնում այդ գազանի երախին։ Հաշվել են, որ մի գայլը տարեկան ուտում է 1—2 տոննա կենդանի միս։

Ուրեմն և տեղին է այդ վնասակար գազանին ոչնչացնելը։ Թեև դրան հակառակ են որոշ կենդանաբաններ, ելնելով այն բանից, որ գայլը թույլ ու հիվանդ կենդանիներին ոչնչացնելով, իսկ առողջներին միշտ ահի մեջ ու զգաստ պահելով, որոշ օգուտ է տալիս մեր կենդանական աշխարհին։ Դա ճիշտ է, բայց կոնկրետ, Հայաստանի պայմաններում գայլերին ոչնչացնելն անհրաժեշտություն է։ Ինչո՞ւ։ Որովհետև չափազանց քիչ կենդանի է մնացել մեր բնության մեջ և այդ քիչը մենք չենք կարող գայլերի բերանը տալ՝ փորձելու համար, թե գայլի գոյությունը օգո՞ւտ է, թե՞ վնաս մեր բնությանը։ Մանավանդ, որ կառավարությունը բերել և մեր երկրի կանաչ մասերում՝ Հաղարծնի անտառներում, Ծաղկունյաց լեռներում, Խոսրովի որսարգելարանում բաց է թողել բծավոր եղջերուների նախիրներ։ Դրանք դեռևս կիսաընտանի խեղճ կենդանիներ են և դժվարությամբ են պաշտպանվում գայլերից։ Այդ նույն վայրերում բաց են թողել նաև ներմուծված վարազներ, որոնք նույնպես լրիվ վայրենացած չեն և որոնց նույնպես ոչնչացնում են գայլերը։ Հապա հայկական լեռնային ոչխա՞րը, որը միակն է աշխարհում և որին նույնպես գայլերը չեն խնայում։

Չէ, մեկ մոտ գոնե սխալ կլինի խնայել այդ արյունարբուին։

Ջահել կենդանին սովորաբար քիչ ձագեր է ծնում, հասակավորը՝ շատ։ Ջահել գայլը բերում է 3—4 ձագ, մեծը՝ 3—8, երբեմն նույնիսկ 12 ձագ։ Խաչթառակցի Արզումանը, օրինակ, մի անգամ գայլի արգանդից 12 ձագ է հանել։ Գայլի ձագն ագահ է և շաբունակ որսի միս է պահանջում իր ծնողներից։ Սրանք էլ պատահած կենդանուն խեղդում ու միս է, որ կրում են իրենց որջը։

Այդ է պատճառը, որ հատկապես ամառնամուտին մեր հոտերը հանգստություն չունեն գայլերի հարձակումներից։

Իսկ երբ, սկսած հուլիսից, ձագերն էլ են մասնակցում իրենց ծնողների ավազակություններին, սաստկանում է թե՛ ընտանի, թե՛ վայրի կենդանիների ջարդը.

Հաջորդ անգամ՝ շնագայլի մասին։



# ՀԵՏԱՔՐՔԻՐ

*(Սկիզբը՝ «Պիոներ» № 12, 1970 թ.)*

**10. Ո՞րն է աշխարհի ամենահյուսիսային քաղաքը։ Ի՞նչ կարող եք պատմել նրա մասին։**

**11. Այն ո՞ր մայր ցամաքն է, որի քարտեզի վրա չեք գտնի գետերի, լճերի և քաղաքների անուններ։**

**12. Մինչև Կոլումբոսի կողմից Ամերիկայի հայտնաբերումը բընիկներն ի՞նչ ընտանի կենդանի էին պահում (պատմեցե՛ք նրանց մասին), իսկ թռչուններից էլ ո՞րը բերեցին Եվրոպա և Ամերիկայի բնիկ ժողովրդի անունով կոչեցին։**

**13. Թվարկեցե՛ք եվրոպական յոթ քաղաքներ, որոնք սկսում են «Բ» տառով։**

**14. Թվարկեցե՛ք Եվրոպայի յոթը փոքրիկ, այսպես ասած, «մանկիկ պետությունները» (որոնց հաճախ սխալմամբ «քաղաք-պետություն» են անվանում)։ Դրանցից ո՞րն է աշխարհի ամենախիտ բնակեցված պետությունը։**

**15. Եվրոպայի ո՞ր թերակղզին է, որի ափերը ողողում են հինգ ծովեր։**

**16. Ի՞նչը եղավ դրդապատճառ, որ Ժյուլ Վեռնի նկարագրած նավապետ Գրանտի որդիները սկսեցին որոնել իրենց հորը և ինչո՞ւ երկար ժամանակ պահանջվեց նրա ապաստանած կղզին գտնելու համար։**

**17. Ժյուլ Վեռնը որտեղի՞ց է վերցրել իր հերոսի՝ նավապետ Գրանտի անունը։ Ինչո՞ւ է գիրքը վերնագրել՝ «Նավապետ Գրանտի որդիները»։**

**18. Ժյուլ Վեռնի հերոս Նավապետ Գրանտը հեռավոր Օվկիանայում ինչո՛ւ էր փնտրում այդ կղզին։**

## ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐ

10. Համերֆեստը։ Գտնվում է Նորվեգիայում։ Քաղաքի լայնությունը 70 և կես աստիճանն է,

# Է Ի Մ Ա Ն Ա Լ

այսինքն՝ հյուսիսային բևեռային շրջագծից էլ հյուսիս է գտնվում: Եթե մենք լինենք այդ քաղաքում, մեզ համար շատ դժվար կլինի հարմարվել տեղի «գիշեր ու ցերեկ» հասկացություններին: Համերֆեստի ցերեկը տևում է մայիսի 13-ից մինչև հուլիսի 29-ը, իսկ գիշերը՝ նոյեմբերի 18-ից հունվարի 23-ը: Ցերեկվա ընթացքում հյուսիսային արևը անչափ վեհ ու զմայլելի է: Եթե հին եգիպտացիների, ինկերի, ացտեկների կամ այլ արևպաշտ ժողովուրդների քրմերին հայտնի լինեի այդ երևույթը, և նրանք հնարավորություն ունենային այստեղ գալու, ապա այն ուխտատեղի կդարձնեին և մայիս—հուլիս ամիսներին կգային երկրպագելու արև-աստծուն և զգալու նրա իսկական փայլը:

Համերֆեստը Եվրոպայի առաջին քաղաքն է, որ ստացել է էլեկտրականություն, ինչով և հաճախ պարծենում են նրա քաղաքացիները: Քաղաքի բնակչության թիվը մոտ 6000 է: Նրանք հիմնականում զբաղվում են ձկնորսությամբ: Այստեղ կատարվում է Սպիտակ արջի և բևեռային գազանների մորթու առևտուրը: Համերֆեստը չսառչող նավահանգիստ է, քանի որ նրա մոտով է անցնում Հյուսիսատլանտյան տաք հոսանքը:

11. Անտարկտիդան է: Ընդհանրապես նրա քարտեզը շատ տխուր տեսք կունենար, եթե չլինեին այն գունավոր դրոշակները, որոնք ցույց են տալիս տասներկու պետությունների կողմից այնտեղ ստեղծված գիտական կայանները:

12. Լաման, որը պատկանում է ուղտի ընտանիքին: Նա այսօր էլ պահվում է Անդյան երկրներում՝ Ամերիկայում, և տեղացիների համար ծառայում է որպես գրաստ: Լամայի միսն ուտում են, իսկ կաշին և բուրդը օգտագործում: Թռչուններից Եվրոպա բերեցին հնդկահավը, որին էլ տրվեց ամերիկյան բնիկների անունը: Բացի լամայից, մնացած բոլոր ընտանի կենդանիները Ամերիկա են բերվել Արևելյան կիսագնդից: Այնպես որ ներկայումս թե՛ Հյուսիսային և թե՛ Հարավային Ամերիկայում արածող միլիոնավոր մանր ու խոշոր եղջերավորների, խոզերի ու հավերի և այլ բոլոր ընտանի կենդանիների ու թռչունների նախահայրերը բերվել են Արևելյան կիսագնդից, գլխավորապես՝ Եվրոպայից:

13. Բեռլին, Բելգրադ, Բեռն, Բուդապեշտ, Բուխարեստ, Բրյուսել, Բոնն:

14. Անդորա, Վատիկան, Լիխտենշտեյն, Լյուքսեմբուրգ, Մալթա, Մոնակո, Սան-Մարինո:

15. Բալկանյան թերակղզին, որի ափերը միաժամանակ ողողում են՝ Սև, Մարմարայի, Էգեյան, Հոնիական և Ադրիատիկ ծովերը:

16. Այն նավը, որ «Բրիտանիա» անունն էր կրում, Օվկիանիայում խորտակվում է: Նավապետ Գրանտը ապաստանում է մի կղզում, շշի մեջ դնում մի գրություն, նետում ծովը: Շիշը հետագայում գտնում են շնաձըկան փորում՝ Բրիտանական ափերի մոտ: Գրության մեջ կղզին անվանվում էր Տաբոր: Բայց այդ կղզին ունեցել է իր երկրորդ անունը՝ Մարիա-Թերեզա, որով նա հայտնի է եղել Պագանելին: Սակայն գրության մեջ չէր նշված կղզու աշխարհագրական լայնությունը, այդ պատճառով էլ դըժվար էր որոշել կղզու տեղը: Հենց այս պատճառով նավապետ Գրանտին որոնում էին այդքան երկար: Դա առիթ ծառայեց, որ «Նավապետ Գրանտի որդիներ» գրքի հերոսների հետ ընթերցողները էլ մտովի կատարեն հիանալի ու երկար մի ճանապարհորդություն:




17. Ժյուլ Վեռնը իր հերոսի՝ նավապետ Գրանտի անունը վերցրել է աշխարհագրական քարտեզից, որ կանադական Արկտիկայի կղզիներից մեկի անունն է: Գրանտ անունը կրող կղզին գտնվում է Գրենլանդիայի հյուսիսային մասից դեպի արևմուտք: Ինչ վերաբերում է գրքի անվանմանը, ապա այն այդպես է կոչել, քանի որ նավապետ Գրանտին որոնող արշավախմբին մասնակցում էին նրա որդիները՝ Մերին և Ռոբերտը: Ի պատիվ նրանց էլ Ժյուլ Վեռնը գիրքն անվանեց «Նավապետ Գրանտի որդիները»:

18. Ժյուլ Վեռնի «Նավապետ Գրանտի որդիները» գիրքը գըրվել է այն ժամանակ, երբ Անգլիան իրեն էր միացնում Մեծ Բրիտանիա կղզու հյուսիսային մասը՝ Շոտլանդիան: Այդ կատարվում էր շոտլանդացիների կամքին հակառակ և այդ բողոքը մարմնավորեց Ժյուլ Վեռնը «Նավապետ Գրանտի որդիները» գրքում: Նավապետ Գրանտը շոտլանդացիների համար նոր հայրենիք էր փնտրում, որպես բողոք՝ ընդդեմ անգլիացիների: Նա իր այս գաղափարը իրականացնելու համար ընտրում է հեռավոր Օվկիանիայի կղզիներից մեկը՝ Տաբորը:

ԿԱՄՍԱՐ ԱՎԵՏԻՍՅԱՆ
Աշխարհագրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր



# ՁԵՐ ՊԱԼԱՏԸ

Մեր հին վարպետները իրենց կառուցած գողտրիկ շինությունների, վանքերի ու պալատների վրա փոքրիկ մակագրություններ էին թողնում՝ իրենց անունը:

Այս պալատի վրա, որ նախագծել են՝

Ճարտարապետներ Ս. Քյուրքչյանը, Յու. Առաքելյանը, Լ. Թումանյանը, կառուցել՝

1-ին շինարարական տրեստի ինժեներներն ու բանվորները, մակագրություն չկա: Նրա փոխարեն մի ցուցանակ ազդարարում է, թե ում է պատկանում պալատը: Եվ «պալատ» բառն էլ մենք պատահաբար չօգտագործեցինք: Այս շենքը, որ դուք տեսնում եք լուսանկարում, պալատ է թե՛ փոխաբերական, թե՛ ուղղակի իմաստով, որովհետև միայն պալատը կարող

Լուսանկարները՝ Վ. ՂԱՍԱԲՅԱՆԻ

է լինել այդքան գեղեցիկ, այդքան շքեղ, և որովհետև հենց այդպես էլ կոչվում է՝

## ԵՐԵՎԱՆԻ ՇԱՀՈՒՄՅԱՆԻ ՇՐՋԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՊԱԼԱՏ

Պալատը, որ կանգնած է արևոտ բլրակի վրա, շրջապատված ծառերի կանաչ պարիսպով, նոր ուսումնական տարում իր դռները լայն բացեց շրջանի հազարավոր պիոներների ու դպրոցականների առջև: Շուրջ 2500 երեխաներ են ընդգրկվել կինոսիրողների ու ավիամոդելիստների, ռադիոսիրողների ու պարարվեստի, գրական, թատերական, գեղանկարչական և պալատի մյուս, ավելի քան 30 խմբակներում: Պակաս հրապուրիչ չեն և մարզական խմբերը՝ շախմատի ու լողի, սեղանի թենիսի ու սուսերամարտի, տուրիստական:

Այստեղ ստեղծված են բոլոր հարմարությունները աշխատանքի և հանգստի համար: Ընդարձակ ճեմասրահները լուսավոր են ու գեղեցիկ: Հենց ճեմասրահներում էլ տեղավորված են բաց ջերմոցները: Փոքրիկ ավազանները ամռան շոգին զովություն են սփռում: Ավելի քան 600 տեղանոց է դահլիճը: Նույնքան ճաշակով ու հնարամտությամբ են կառուցված նաև պլանետարիումը, գրադարան-ընթերցարանը, մարզական սրահն ու լողավազանը: Կաբինետները, որտեղ պարապմունքներ են անցկացնում խմբակները, հարուստ են ու հարմարավետ:

Այս ամենին նախորդել է շինարարների անխոնջ ու քրտնաջան աշխատանքը: Նրանք աշխատել են նույնիսկ գիշերները, որպեսզի երեխաները ժամանակին ստանան իրենց պալատը: Պալատի շինարարության շեֆությունը իրենց վրա էին վերցրել շրջանի դպրոցները: Կոմերիտականներն ու պիոներները շաբաթօրյակներ են կազմակերպել, օգնել շինարարներին: Ամռան ամիսներին, երբ երեխաներից շատերը հանգստանում էին պիոներական ճամբարներում, այստեղ դարձյալ ոչ մի րոպե չէր դադարում աշխատանքը: Պալատի դիրեկտոր Հակոբ Սարգսյանի ղեկավարությամբ տարվում էին վերջին նախապատրաստական աշխատանքները: Հունիս ամսին այստեղ եղան հանրապետական պիոներական 11-րդ հավաքի մասնակիցները: Նրանք շաբաթօրյակ կազմակերպեցին, մաքրեցին, կարգի բերեցին պալատի շրջակայքը:

Պալատն ապրում է հարուստ ու բովանդակալից առօրյայով:

*ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ*

Լույս է տեսնում 1923 թվականից



# ՊԻՈՆԵՐ

№ 1 հունվար 1971 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*Նկ. ՌՈՒԲԵՆ ՂԵՎՈՆԴՅԱՆԻ*

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս., ՀՐԱՋՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍԻՄՈՆՅԱՆ Կ. (գլխ. խմբագրի տեղակալ), ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

**«Пионер»** на армянском языке. Адрес редакции: Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15, Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:*

ՎՖ 06009: Պատվեր՝ 1413: Տպաքանակ՝ 73805: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 7/I 1971 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մնդոյանցի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:

Գինը՝ 10 կ.

